Nar-Pey Khoren.
Hayots Ekeghetsin ev andralernakank

# ՀԱՅՈՑ
# ԵԿԵՂԵՑԻՆ
## ԵՒ
# ԱՆԴՐԱԼԵՌՆԱԿԱՆՔ

ԳՐԵՑ

ԽՈՐԷՆ ԵՊ. ՆԱՐ ՊԷՅ



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՌՈՒԲԷՆԻ Յ. ՔԻՒՐՔՃԵԱՆ
— 1870 —

# ԱԶԴ

---

Անդրալեռնական լրագիրները միշտ մեր Սուրբ Եկեղեցւոյն վրայ ամբաստանութիւններ կընեն, եւ կը ջանան արհամարհելի ցուցընել Եւրոպացւոց, իբրեւ հերետիկոսական: Այս տարի լը Մօնդ եւ Ջիւիշ–Քրոնիքըլ լրագիրները՝ նոյն ոգւով յօդուածներ հրատարակեցին Գաղղիոյ եւ Իտալիոյ մէջ, եւ կուզէին Հայաստանեայց եկեղեցին մոլորեալ ցուցընել:

Գեր. Խորէն Սրբազան գովելի եռանդեամբ վառեալ՝ ջաջացաւ հերքել այն ամբաստանութիւնները, քո՛ւն իսկ Եւրոպացւոց առջեւ: Ուստի եւ Գաղղիարէն լեզուաւ պատասխան գրեց, եւ մի առ մի թշնամեաց խօսքերը ջրեց:

Այս ջատագովական պատասխանը տպուեցաւ Փարիզու հռչակաւոր ՄԻՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ անուանով Հանդէսին յուլիս եւ օգոստոս ամսաթերթերուն մէջ: Անդրալեռնականք չկրցին պատասխանել, ու Հայաստանեայց Ս. Եկեղեցին յաղթական հանդիսացաւ իւր թշնամեացը վրայ:

Խորէն Սրբազանին սոյն Հէբրօ–Մը գաղղիարէնէ թարգմանեց մեծ. Կարապետ աղա Պաղ-

Դ

ճեան, եւ Մանզումէ ու Արարատ պատուական լրագրաց մէջ հրատարակուեցաւ յօդուած առ յօդուած, սրբագրութեամբք եւ յաւելուածովք գերապատիւ Հեղինակին ։

Հաստարակութեան ցուցըցած ջերմ ընդունելութենէն յորդորուելով, մենք այդ յօդուածները առանձին տետրակաւ հրատարակել խորհեցանք, Վեհ. Կաթողիկոսին դրուատանաց փառաւոր Կոնդակն ալ ի միասին տպագրելով, իբր ապացոյց այս Հէրքումին ուղղափառութեանը ։ Կը յուսանք որ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ հարազատ որդիքը սիրով ընդունին մեր այս հրատարակութիւնը, եւ գովեն մեր ազգասիրական եռանդը ։

Կ. Պօլիս 1 Նոյ. 1869.

ՀՐԱՏԱՐԱԿԻՉ

Մ. ԲԱՌՆԻԿ ՍԷՖԷՐԵԱՆ

Առ բարեխրատ քարոզիչ Ս. Աստուածածին եկեղեցւոյն Պէշիկթաշի հոգեզգօն ԽՈՐԷՆ Սրբազան Եպիսկոպոսն ժաման.

Համար 256.

Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ԳԷՈՐԳ Ծառայ Քրիստոսի և անհասանելի կամօքն Աստուծոյ Եպիսկոպոսապետ և Կաթողիկոս ամենայն Հայոց, Ծայրագոյն Պատրիարք Համազգական Նախամեծար Աթոռոյ Արարատեան Առաքելական Մայր Եկեղեցւոյ սրբոյ Կաթողիկէ Էջմիածնի, Բազմահանճար Սիրելւոյ մերում Խորէն Սրբազան Եպիսկոպոսի խնդալ միշտ ի Տէր։

ԱԶԳԱՍԷՐ նախանձայուզութիւն Ձեր ի խնամարկել զդըպրոցն Պէշիկթաշի, հնարիւք յորդորման զժողովուրդս, և ի ժողովս Պատրիարքարանի յինչ ինչ

Ազգային գործս առողջ դիտո-ղութիւնք Սիրելւոյդ, նա զի քաջայարմար և զօրաւոր բանք և փաստք 'ի պաշտպանութիւն և 'ի ջատագովութիւն Հայաս-տանեայցս ամենամաքուր Եկե-ղեցւոյ առաջի անդրալեռնա-կան հաւատագրգիռ անձանցն գնդի, քաղցր պարտականու-թիւն դնեն 'ի վերայ մեր անպա-րագրելի հաճութեամբ սրտի փութալ յառաքումն Օրհնու-թիւնաբեր Հայրապետական Կոն-դակիս, զի յաւէտ քաջալերեալ, լինիցիք վահան ամրութեան և պաշտպանութեան Հաւատոյ ա-ռաջի Նախանձաբեկ օտարազ-նեայց։

Քանզի և այն որ ետ Ձեզ շը-նորհս լեզուագիտութեան՝ հարկ իմն դնէ 'ի վերայ Ձեր յամենայն կարևոր դէպս՝ ա՛յսպէս յօգուտ

՚ի կիր արկանել զայն վասն ընդ-հանուր ազգային օգտի, և ՚ի պարծանս Ս. Աթոռոյս Էջմիածնի։

Յանձնեմք ՚զՁեզ լիանուէր շը-նորհաց Բարձրելոյն։

Յամի Տեառն մերոյ 1869 սեպ. 18, եւ յազգային թուականութեան ՌՅԺԸ, ՚ի Ս. Էջ-միածին։

ԳԷՈՐԳ Դ.

ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

« Խորէն Սրբազան Արքեպիսկոպոս Նար-
« Պէյ , Հայոց ազգային Խառն ժողովոյն Փոխ-
« Ատենապետը բարեհաճեր է հետեւեալ խիստ
« ընտիր յօդուածն յուղարկել առ մեզ ։ Ասոր
« մէջ մեծանմուտ Արքեպիսկոպոսը կհերքէ
« անդրալեռնական լրագրաց գրածները , որ
« այնպէս մը հռչակեցին իբր թէ Վատիկանի
« յառաջիկայ գումարելի ժողովոյն առթիւ Հա-
« յերը Հռովմայ մերձենալու դիտաւորութիւն
« մը ունեցած ըլլան , եւ ասով Հայոց եկեղե-
« ցին իբր թէ վերադառնալ ուզած ըլլայ իւր
« Նախնի աւանդութեանցը ։ Նար-Պէյ Սրբազանն
« կը հաստատէ թէ Հայաստանեայց պատկառելի
« Եկեղեցին բնաւ երբէք պապական եղած չէ
« եւ այսօր եւս չմտածէր ըլլալ ։ Երջանիկ կը
« համարինք զմեզ բազմահմուտ Արքեպիսկո-
« պոսին երկասիրութիւնը մեր ընթերցողաց հա-
« ղորդելու ։

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ
ՄԻՈՒԹԻՒՆ
ՔՐԻՍՏՈՍԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԻՆ
Ի ՓԱՐԻԶ

# ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ
## ԵՒ
# ԱՆԴՐԱԼԵՌՆԱԿԱՆՔ



## ՀԵՐՔՈՒՄՆ

### ԼԸ ՄՕՆՏ ԵՒ ՉԻՎԻԼԹԱ ՔԱԹԹՕԼԻՔԱ ԼՐԱԳՐԱՑ

---

### Ա.

*Մեք, որ յաւէտ կը սիրեմք բոլոր մեր խնամքներն ու մեր բովանդակ ժամանակը նուիրել Աստուծոյ մեզի յանձնուած փոքու հօտին առաջնորդութեանն ու դաստիարակութեանը, և հովիւ խոնարհ, աւելի կը փափաքիմք ըստ առաքելոյն Պօղոսի «շինել քան թէ աւերել», ունայն վիճաբանութեանց շշուկը հազիւ թէ առ մեզ կը հասնի: Ատելի են մեզ կրօնական հակաճառութիւնք, ընդունայն վէճեր՝ երբ բարեմտութիւնը միայն մէկ կողմն է: Կրօնական վիճաբանութիւնք՝ գրեթէ միշտ մըտքերը կը խռովեն, և կը խանգարեն այն լաւ ներդաշնակութիւնն որ պէտք է տիրէ քըրիստոնեայ հասարակութեանց մէջ, ըստ*

« Խորէն Սրբազան Արքեպիսկոպոս Նար-
« Պէյ, Հայոց ազգային Խառն Ժողովոյն Փոխ-
« Ատենապետը քաջահաճեր է հետեւեալ խիստ
« ընտիր յօդուածն յուղարկել առ մեզ ։ Աստ
« մէջ մեծապատիւ Արքեպիսկոպոսը կհերքէ
« անդրալեռնական լրագրաց գրածները, որ
« այնպէս մը հռչակեցին իբր թէ Վատիկանի
« յառաջիկայ գումարելի ժողովոյն առթիւ Հա-
« յերը Հռովմայ միրձենալու դիտաւորութիւն
« մը ունեցած ըլլան, եւ ասով Հայոց եկեղե-
« ցին իբր թէ վերադառնալ ուզած ըլլայ իւր
« նախնի աւանդութեանցը ։ Նար–Պէյ Սրբազանն
« կը հաստատէ թէ Հայաստանեայց պատկառելի
« Եկեղեցին բնաւ երբէք պապական եղած չէ
« եւ այսօր եւս չմտածէր ըլլալ ։ Երջանիկ կը
« համարինք զմեզ բազմահմուտ Արքեպիսկո-
« պոսին երկասիրութիւնը մեր ընթերցողաց հա-
« ղորդելու ։

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ

ՄԻՈՒԹԻՒՆ

ՔՐԻՍՏՈՍԱԿԱՆ ՀԱՆԴԻՍԻՆ

Ի ՓԱՐԻԶ

# ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՆ

ԵՒ

# ԱՆԴՐԱԼԵՌՆԱԿԱՆՔ

## ՀԵՐՔՈՒՄՆ

ԼԸ ՄՕՆՏ ԵՒ ԶԻՎԻԼԹԱ ՔԱԹԹՕԼԻՔԱ ԼՐԱԳՐԱՑ

---

### Ա.

Մեք, որ յաւէտ կը սիրեմք բոլոր մեր խնամքներն ու մեր բովանդակ ժամանակը նուիրել Աստուծոյ մեզի յանձնուած փոքու հօտին առաջնորդութեանն ու դաստիարակութեանը, և հովիւ խոնարհ, աւելի կը փափաքիմք ըստ առաքելոյն Պօղոսի «շինել քան թէ աւերել», ունայն վիճաբանութեանց շշուկը հազիւ թէ առ մեզ կը հասնի ։ Ատելի են մեզ կրօնական հակաճառութիւնք, ընդունայն վէճեր՝ երբ բարեմտութիւնը միայն մէկ կողմն է ։ կրօնական վիճաբանութիւնք՝ գրեթէ միշտ մըտքերը կը խռովեն, և կը խանգարեն այն լաւներդաշնակութիւնն, որ պէտք է տիրէ քրիստոնեայ հասարակութեանց մէջ, ըստ

օրինացն Քրիստոսի ։ Մեք վիճելու տեղ չուադոյն կը համարիմք լռել, աղօթելով վասն նոցա՝ որք կը ջանան սուտն ու մոլարը տարածել ։ Այսօր ևս կը լռէինք անշուշտ՝ եթէ չը տեսնէինք որ մեծ անարգութիւն էր մեզ գէթ մի անգամ խրամատին վրայ ինքզինքնիս թշնամւոյն չցուցնել, երբ հաւատարիմ զինուոր մեր հնապանծ կրօնական դրօշակին ։

Մեր այս գրութեան նպատակն է՝ լը Մօնդ և Ջէնէլմա Փօնբնօլէա Անդրալեռնական օրագրաց մեր Ս. Եկեղեցւոյն դէմ այս մօտերս գրածները հերքել, ցուցընելով իրենց խաբէութիւնը, տգիտութիւնն ու կամակորութիւնը ։

Այս երկու օրագիրները կերեւի թէ իրենց նպատակ դրած են անուանարկ ընել այն վեհանձն քրիստոնեաներն՝ որ իննեւտասներորդ դարուս մէջ կուզեն իրենց ժամանակին մարդն ըլլալ, և որ պատիւ անձանց կը համարին յարգել Աւետարանի եղբայրական սկզբունքներն, քան թէ միջին դարու օրէնքները, օրէնքներ՝ որ արեա՛ն տառերով գրուած են Հաւատաքննիչներուն հրոյն ու սրովը ։

Ակամայ կամօք այս հերքումը կ'ընեմք, վասն զի ծանր է մեզ տեսնելը որ հակառակորդք այնպիսի սխալներ կ'ընեն որ

չարութեամբ յօրինած սուտերէ դժուա֊
րաւ կը տարբերին ։ Մեք չեմք կրնար մոռ֊
նալ որ Արեւելեան եկեղեցիներն երկար
ժամանակէ հետէ հրատարակած են իրենց
ներողամտութիւնը ։

Հայաստանեայց սուրբ և առաքելա֊
կան եկեղեցին, հաւատարիմ միշտ իւր
խաղաղասէր և հաշտասէր աւանդութեանցը
սովոր չէ բնաւ նախատակոծ ընել զոք,
կամ զրպարտութիւնն իրեն օգնական առ֊
նուլ, երբ պատերազմիլ ուզէ ։ Նա իւր
զէնքերը երկնաւոր վարդապետին բանիցը
մէջ, աւետարանական սկզբունքներուն
մէջ կը գտնէ, և ’ի փոխարէն այն նախա֊
տանաց, զորս անդրալեռնականք պարտք
մը համարած են անոր ուղղել, Հայոց
սուրբ եկեղեցին միշտ օրհնութիւն և ա֊
ղօթք կը սփռէ անոնց վրայ ։

Արդ գամք մեր առաջիկայ խնդրոյն ։

Յիսուսեանց օրագիրը Չիվիլթա Գաթթօլիգա,
ուրկէց առնելով կը թարգմանէ և կճոխացնէ
Լը Մօնտ իւր 67 թուոյն մէջ, Յունաց Ս. Պատ֊
րիարքին ըրած ցուրտ ընդունելութիւնն և
Կոստանդնուպօլսոյ Հայոց ամեն. Պատրի֊
արքին «Բարեյօժար ընդունելութիւնն» իրարու
հակառակ կանուանէ, որոց երկուքն ալ
հրաւիրանաց նամակ ընդունած էին յա֊
ռաջիկայ Համմէական ժողովոյն, ուստի

յոյս կը տածէ՝ թէ Հայք Հռովմայ շատ մօտեցան, որովհետեւ աւելի յարգանք ցուցցեր են քան զՅոյնս առ հրաւէր Պապին։

Հեղինակը չէ խորհրդածեր ուրեմն որ ուրիշ կերպով չէր կրնար ըլլալ, եւ ոչ մէկ կողմէն ցուրտ, եւ ոչ միւս կողմէն բարեյօժար ընդունելութեան եղած է։ Յունաց Ս. Պատրիարքն իր եկեղեցւոյն առաջին եպիսկոպոսն է, եւ կրնար ինքնին վճռել եւ Հռովմայ աթոռոյն հրաւէրը հաստատութեամբ մերժել։ Սակայն չէր կրնար նոյն ճանապարհը բռնել Կոստանդնուպօլսոյ Հայոց Ս. Պատրիարքը, որովհետեւ ինք Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյն առաջին ներկայացուցիչը չէ։ Այս ներկայացուցիչն է Ծայրագոյն Պատրիարքն որ Ս. Էջմիածնի աթոռը նստած է, եւ կանուանի Կաթողիկոս ամենայն Հայոց։

Ուստի Հռոմայ հրաւէրը պէտք էր ըստ օրինի առ Նորին Վեհափառութիւնն ուղղուիլ, եւ ոչ թէ ուղղակի Կոստանդնուպօլսոյ Պատրիարքարանը գալ։ Հռովմայ արքունիքը այս խնդրոյն մէջ պատշաճից ցաւալի եւ անխմանալի մոռացում մը ցուցուց, մոռացում մը՝ որ երբէք չէ՛ կարելի արդարանալ, ընդդէմ լինելով եկեղեցական նուիրապետական իրաւանց, այն իրաւանց կ՚ըսեմք՝ որոց Հռոմ այնքան ջերմ

վերջխնդիր եղած է, և է՛ միշտ, երբ խնդիրը իւր իրաւանց վրայ է։

Կոստանդնուպօլսոյ Ս. Պատրիարքը Հռովմէական պատգամաւորաց իմացուց որ ինքը Հայոց մայր Աթոռին ենթարկեալ եպիսկոպոս մըն է. ուստի և իւր պարտքն էր իր հոգեւոր Գլխոյն հաղորդել այս խնդիրը, նորա վճիռն ընդունելու համար։

Ահա այս է այն «Բարեյօժար ընդունելութեան բրա» գրածնին, որ ուրիշ բան չէր բայց եթէ ճոյեւլու կերպով ընդունուած այցելութեան մը։ Ցիտուսեանք պարապ տեղ կուզեն ցուցնել թէ Հայոց եկեղեցին խոնարհութիւն մը ըրած ըլլայ Հռովմայ առջեւ։ Հայերը գիտեն որ այդ խոնարհութիւն չէ այլ նուաստութիւն է, և նուաստութիւն՝ Հայոց եկեղեցին բնաւ չընդունիր։

Ուրեմն յը Մծնօ և անդրալեռնականք (որոց ինքը գործիքն է) աւելորդ տեղ յոյսեր ունեցեր են պարզ քաղաքավարական ընդունելութենէ մը։ Ի՞նչպէս կըմոռնան որ Հայոց Պօլսոյ Ս. Պատրիարքը անհատ մի էր, և այսպիսի պարագայի մէջ իւր վարուելու կամ խորհելու եղանակը՝ չէր կրնար ազդեցութիւն ունենալ այն կենսական խնդրոյն վրայ որ Հայոց մայր Աթոռին և ամբողջ Ազգին կամքէն կախում ունէր։

յոյս կը տածէ՝ թէ Հայք Հռովմայ շատ մօտեցան, որովհետեւ աւելի յարգանք ցուցըցեր են քան զՅոյնս առ հրաւէր Պապին։

Հեղինակը չէ խորհրդածեր ուրեմն որ ուրիշ կերպով չէր կրնար ըլլալ, և ոչ մէկ կողմէն ցուրտ, և ոչ միւս կողմէն բարեյօժար ընդունելութեան եղած է։ Յունաց Ս. Պատրիարքն իր եկեղեցւոյն առաջին եպիսկոպոսն է, և կրնար ինքնին վճռել և Հռովմայ աթոռոյն հրաւէրը հաստատութեամբ մերժել։ Սակայն չէր կրնար նոյն ճանապարհը բռնել Կոստանդնուպոլսոյ Հայոց Ս. Պատրիարքը, որովհետեւ ինք Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյն առաջին ներկայացուցիչը չէ։ Այս ներկայացուցիչն է Ծայրագոյն Պատրիարքն որ Ս. Էջմիածնի աթոռը նստած է, և կանուանի Կաթողիկոս ամենայն Հայոց։

Ուստի Հռոմայ հրաւէրը պէտք էր ըստ օրինի առ նորին վեհափառութիւնն ուղղուիլ, և ոչ թէ ուղղակի Կոստանդնուպոլսոյ Պատրիարքարանը գալ։ Հռովմայ արքունիքը այս խնդրոյն մէջ պատշաճից ցաւալի և անխմանալի մոռացում մը ցուցուց, մոռացում մը՝ որ երբէք չէ կարելի արդարանալ, ընդդէմ լինելով եկեղեցական նուիրապետական իրաւանց, այն իրաւանց կ'ըսեմք՝ որոց Հռոմ այնքան ջերմ

վրէժխնդիր եղած է, և է՛ միշտ, երբ խըն-
դիրը իւր իրաւանց վրայ է։

Կոստանդնուպօլսոյ Ս. Պատրիարքը Հը-
ռովմէական պատգամաւորաց իմացուց որ
ինքը Հայոց մայր Աթոռին ենթարկեալ ե-
պիսկոպոս մըն է. ուստի և իւր պարտքն
էր իր հոգևւոր Գլխոյն հաղորդել այս խըն-
դիրը, նորա վճիռն ընդունելու համար։

Ահա այս է այն «Բարեյօժար ընդունելու-
թեան բառը» գրածնին, որ ուրիշ բան չէր
բայց եթէ վայելուչ կերպով ընդունուած այցե-
լութեան մը։ Ցիսուսեանք պարապ տեղ
կուզեն ցուցնել թէ Հայոց եկեղեցին խո-
նարհութիւն մը ըրած ըլլայ Հռովմայ առ-
ջեւ։ Հայերը գիտեն որ այդ խոնարհու-
թիւն չէ այլ նուաստութիւն է, և նուաս-
տութիւն՝ Հայոց եկեղեցին բնաւ չըն-
դունիր։

Յուրեմն ԺԸ Մօնա և անդրալեռնականք
(որոց ինքը գործիքն է) աւելորդ տեղ
յոյսեր ունեցեր են պարզ քաղաքավարա-
կան ընդունելութենէ մը։ Ի՞նչպէս կը
մոռնան որ Հայոց Պօղոս Ս. Պատրիարքը
անհատ մի էր, և այսպիսի պարագայի մէջ
իւր վարուելու կամ խորհելու եղանակը՝
չէր կրնար ազդեցութիւն ունենալ այն կեն-
սական խնդրոյն վրայ որ Հայոց մայր Աթոռին
և ամբողջ Ազգին կամքէն կախում ունէր։

Պօղոս Տէրաւզեանը գիտէր զայս, ուստի և իւր պարտքը կատարեց, վերոյիշեալ Հռովմէական հրաւիրագիրը եպիսկոպոսական ժողովոյն առջեւ դնելով, և հասարակաց որոշման համեմատ յուղարկեց զայն առ Վեհ. Կաթողիկոսն ամենայն Հայոց։

Այսպէս ահա Հայաստանեայց եկեղեցւոյ Վեհ. Կաթողիկոսը փոխանակ ուղղակի Հռոմէն ընդունելու՝ անուղղակի կերպով ընդունեցաւ այդ զարմանալի հրաւիրագիրը՝ որ լի էր անտեղութեամբք։

Իսկոյն Սուրբ Սինոդը գումարեցաւ, և միաբան որոշուեցաւ որ եկեղեցական սովորութեանց և իրաւանց ընդդէմ եղած այսպիսի հրաւէր մը, բնաւ երբէք չընդունուի։ Կաթողիկոսական կոնդակը մայր Աթոռոյն հպատակող պատրիարքութեանց և եպիսկոպոսութեանց առ հասարակ ծանոյց այս օրինաւոր որոշումը, և ամենքն ալ հնազանդեցան Հովուապետին ձայնին։

Չգտնուեցաւ Հայ եպիսկոպոս մը, որ պապական շողոքորթութեանց ունկն դնելով ընդունի այն հրաւիրագիրը, և յանձնառու ըլլայ իւր եկեղեցւոյն դրժելու։ Այլ ամենքն ալ մերժեցին զայն, զարմանք ցուցնելով որ ի՜նչպէս Հռոմ Հայ եպիսկոպոսութեան վրայ նուաստ համարում մը կը համարձակի ունենալ, յուսալով իմն որ

զիրենք իրենց վեհագոյն Գլխէն կարենալ բաժանել ։ Եւ ոմանք գոյութեան արժանի եռանդեամբ նաեւ պատշաճ պատասխաններ ալ գրել չդանդաղեցան ։

Հայ եպիսկոպոսաց այս միաբանական ոգին և իրենց եկեղեցւոյն վրայ ցուցուցած հաւատարմութիւնը՝ թէ՛ առաջին և թէ՛ վեհ․ կաթողիկոսին սիրտը ուրախութեամբ լեցուց ։ Բայց Ցխաւսեան օրագիրը՝ ճշմարտութեան դէմ միամիտները խաբելով՝ կըսէ թէ «Հայոց կաթողիկոսը Կ. Պոլսոյ մէջ եղած ընդունելութեան վրայ սարսափեր է եղեր »։

Այդ սարսափը անդրադառնական կրադրաց երեւակայութեանը մէջ միայն տեղի ունեցած է ։ Այո՛, թող գիտնան որ Էջմիածնայ Առաքելական Աթոռը հաստատուն է և անշարժելի․ որովհետեւ իւր ստորադրելոց սիրոյն և մեծարանացը վրայ հիմնուած է ։ Իւր պահպանութեան համար՝ բաւական են բարոյական զէնքեր և հոգեւոր զօրավարներ․ իր զինարանները՝ Աւետարանն ու սուրբ Գիրքերն են․ իւր սուրն է այն Խաչը, որուն վրայէն երկնաւո՛ր Տէրն կաղաղակէր գոչելով «Սիրեցէ՛ք զմիմեանս»։

Այս այն օրէնքն է զոր Հռոմայ հաւատաքննութեան խաւարչտին բանտերն շատ ու շատ անգամ արհամարհեցին, —զոր պա֊

պերն ա՛յնչափ անգամ առ ոտն կոխեցին, —զոր Յովհաննէս ԺԲ. պապը ամենադաժնեայ հալածանաց փոխարկեց երբ 964ին ձեռնհաս եղաւ բռնութեամբ վերստին Հռոմ մտնելու, —զոր Ադրիանոս Դ. պապը Առնալտօ տի Պռէշիա հռչակաւոր հայրենասիրին արիւնովը կնքեց 1155ին:

Բայց կաթողիկոսն ամենայն Հայոց շատ աւելի մեծ զօրութիւն մը ունի, նորա ոյժն է այն սէրը՝ զոր հայր մը, Առաքելոց ճշմարիտ յաջորդ մը, իւր սիրելի որդիներէն կընդունի: Քանի որ այս զօրութիւնը չի պակսիր, և կարելի չէ՛ որ պակսի, բոլոր Հայոց սրտերը իրեն աթոռ են, և Հայոց կաթողիկոսութեան սահմանը կը տարածուի ընդ ամենայն երկիր, ո՛չ հրով, ո՛չ սրով, այլ սիրով, և միա՛յն սիրով:

Բ.

Յիսուսեանց օրագիրը՝ որ ինչպէս տեսանք, հռովմէական հրաւիրագրին միտեալ կը ցուցընէր զՊօղոս Ե, Պատրիարքը, լսելով յետոյ նորա հրաժարիլը, այնպէս կը համարի թէ նա պատրիարքական աթոռը թողլու ստիպուած ըլլայ, չկարենալով դէմ դնել Բ. Դրան քով Էջմիածնայ կողմանէ ազդուած դաւերուն:

Սակայն այսպիսի սուտ մը մեզի հա-

մար հերքման կարօտ չէ։ Այսօր ամէն Հայ գիտէ որ Պօղոս սրբազան, պատկառելի ծերունին, իւր ալեւոր հասակին պարտ ու պատշաճ հանգիստն առնելու համար միայն էր որ հրաժարական տըւաւ։ Եւ եթէ ուրիշ մասնաւոր պարագաներ այս էական պատճառին հետ զուգընթացան, անոնք եւս զուտ ներքին և ազգային նկատումներ էին, ուստի և կատարելապէս անկախ Հռոմէական ժողովոյն խնդրէն։

Արդ եթէ Յիսուսեանք ժամանակակից դէպքերը այսքան կը թիւրեն և կաղաւաղեն, որչափ ևս առաւել հին պատմութիւնը բոլորովին կերպարանափոխ կընեն։

Այս պատմական սխալներն ալ համառօտիւ նշանակեմք, ցուցնելու համար որ Յիսուսեանց և անդրալեռնականաց նաև պատմական փաստերը որչափ խախուտ հիմանց վրայ դրուած են։

Ներսէս Գ. կաթողիկոսը (զոր Ջէվէնմ» ըստ հաճոյից Նէէր» կանուանէ), Հռոմայ հետ բնաւ երբէք յարաբերութիւն չունեցաւ, ուստի ի՞նչպէս կարելի է որ Յիսուսեանք ստաբանեն՝ ըսելով այսպէս թէ «Նա սրբութեամբ ապրեցաւ, ու մեռաւ Հռովմայ եկեղեցւոյն հետ հաղորդակցութեամբ»։

Սխալ է, [illegible] և միւս [illegible] Թէ

«Նա՛ Էջմիածնի վանքը կառոյց 650ին»։ Ո՞վ չգիտեր որ Հայոց առաքելութեան այս սրբազան ամրոցը՝ ոչ թէ Ներսէս Գ. էն չինուեցաւ, այլ անկէ շատ առաջ, Քրիստոսի 303 թուականին՝ ճարտարապետեցաւ 'ի միածին Որդւոյն Աստուծոյ, և հիմնարկեալ կառուցաւ 'ի սուրբ Գրիգոր Լուսաւորչէ և յարքայէն մեծէ 'ի Տրդատայ։

Բայց համարիմք որ գրչի սխալմամբ Չամչեան ուզած ըլլայ հասկցնել զսուրբ Ներսէս Չորրորդ, զոր Հայոց եկեղեցին իրաւամբ Շնորհալի անուանած է, վասն զի խորին աստուածաբան էր, մեծ գրագէտ, նշանաւոր բանաստեղծ, մին 'ի բազմահանճար հարց անտի. որովք կը պարծի Հայաստանեայց եկեղեցին, և զոր կարող եմք կոչել «Հայոց Ֆենելոնը»։

Արդ այս սուրբ քահանայապետն որ ԺԲ. դարուն մէջ կ'ապրէր, Հռոմայ արքունեաց հետ հաղորդակցութիւն մը չունեցաւ բնաւ երբէք։ Իւր եռանդուն ջանից մասնաւոր քրիստոնէավայել նպատակն եղաւ Հայոց և Յունաց եկեղեցեաց մէջ եղբայրական միութիւն մը հաստատել, հերքելով այն սխալներն ու զրպարտութիւնները, որով յունական աստուածաբանք նսեմացնել կ'ուզէին Հայաստանեայց Ս. Եկեղեցին։

Այս մասին՝ Կիռ. Մանուէլ Կոմնենոս կայսեր և Կոստանդնուպօլսոյ պատրիարքին հետ յարաբերութեան մտաւ, և հաւատոյ սքանչելի դաւանութիւն մը գրեց, որ կեցած է ու պիտի մնայ միշտ անայլայլելի և անվանելի դաւանութիւն Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ (1)։

Բայց Հայոց Քահանայապետին յանչափս փափաքած միութիւնը՝ մէկ միայն նպատակ ունէր Բիւզանդիոյ այն եկեղեցին զոր Հռոմ կը հալածէր, և որուն վրայ պապական կայծակները տեղացած էին, և զոր պապերը կուզէին հնազանդեցնել, տկարամիտ կայսերաց աշխարհական օգնութեամբը։

Ի՞նչ զարմանալի հակասութիւն . . . . Հռոմ իր հպատակութեան տակ մնած

(1) Այս հաւատոյ գերազանց գիրը, զոր Վարդան կ՚անուանէ «Յոյժ կորովի եւ հաճելի բնաւից դաւանութիւն», արդէն թարգմանուած է 'ի Լատին, յիտալական եւ 'ի Ռուս լեզուս, եւ աստուածաբանից զարմանքը շարժած է։ Նոյնը կատարելագոյն եղանակաւ բընագրէն Գաղղիերէնի թարգմանելով տպագրեց 'ի Փարիզ, Պ. Տիւլորիէ գաղղիացի երեւելի հայագէտ մեր բարեկամը, որուն Հայ ազգն խորին երախտագիտութիւն մը կը պարտի, Հայոց ազգութեանն ու պատմութեան վրայ հրատարակած նշանաւոր երկասիրութեանց համար։

Հայերը կը պարտաւորէ յարգել և տօնել այնպիսի կաթողիկոս մը որ բոլոր կենացը մէջ աշխատեցաւ իւր եկեղեցին անկախ հովուել, և յունական եկեղեցւոյն հետ սէր հաստատել, առանց Հռոմայ ահաւոր բանադրանքներէն երկիւղ մը կրելու, կամ դէմ 'ի նկատողութիւն զայն առնելու։

Արդ ա՞յս է արդեօք այն մեծ քահանայապետը՝ որոյ համար Ցիսուսեանց օրագիրները կը հռչակեն թէ «մեծաւ Հռոմայ եկեղեցւոյն հետ հաղորդակցութեամբ»։

Միթէ կարելի՞ է պատմական իրողութիւններն այսքան օտարոտի կերպով այլայլել։ Ո՞չ ապաքէն Հայոց պատմութիւնը, և Շնորհալի քահանայապետին գրութիւնները, ազդողագոյնս կը բողոքեն անոնց դէմ որք կը համարձակին իւր խորհուրդները այսպէս այլափոխել։

Գ.

Բայց աւելի մեծ պատմական սխալ մը կը գործեն Չէմչեան, Լը Մօռ և անդրալեռնականք, երբ Ս. Գրիգոր Լուսաւորչի 'ի Հռոմ ըրած ուղևորութիւնը՝ կը քարոզեն իբրև ապացոյց հնազանդութեան առ աթոռն Հռոմայ։

Պատմութիւնը այս կերպով ծամածը-

ուղներըՙ կամ խիղճ չունին, կամ ամենեւին զուրկ են դարուց և ժամանակաց ոգւոյն հասկնալէ ։

Հայոց Նոր Առաքեալը — եթէ Հռոմ գնաց — չէր կրնար պապին հպատակութիւն ընելու կամ շնորհք մը խնդրելու համար երթալ, վասն զի չունէր Նոր բան մը ընդունելիք Հռոմայ պապէն ։ Ո՛չ առաքէն և ինքն հաւասարապատիւ Արքեպիսկոպոս կամ Պատրիարք մըն էր ։

Հայոց Լուսաւորիչը եթէ հպատակութեան համար էր որ Հռոմ գնացՙ ի՞նչ պէտք էր Տրդատ թագաւորը հետն տանել ։ Ո՞չ ապաքէն ընդհակառակն Տրդատ էր որ իւր հետ փափաքեցաւ տանիլ զսուրբ Հայրապետը, որպէս զի իւր քաղաքական նպատակին դիւրագոյն կարենայ հասնիլ, կոստանդիանոսի պէս լիահաւատ ինքնակալի մը դիմաց այնպիսի մեծ նահատակ մը 'ի բարեխօս ներկայացնելով, որուն կարելի չէր մերժել և ոչ ինչ ։

Բայց որպէս զի ընթերցողք կարենան աւելի լաւ ըմբռնել և դատել, յիշատակեմք իրերն ինչպէս որ ժամանակակից պատմագիրները զանոնք կաւանդեն ։

Անակ անուանով Պարթև իշխան մը (Ս. Գրիգոր Լուսաւորչի հայրը) հրապուրանօքն Արտաշրի, որ Պարսկաստանի մէջ

Արշակունեաց թագաւորական ցեղը ջըն-ջած և Սասանեանց իշխանութիւնը հիմ-նադրեր էր, Հայոց Խոսրով Ա. Արշակունի թագաւորը դաւանօք սպաննեց ։

Ս. Գրիգոր, այն փշաբեր ոստոյն ծա-ղիկը, քրիստոնէական կրթութիւն առաւ 'ի Կեսարիա ։ Երբ մեծցաւ, և անդէն հօ-րը ըրած անօրէնութիւնն իմացաւ, իբրև քրիստոնեայ դիւցազն մը՝ իւր անձը ուզեց նուիրել Տրդատայ, որ մեծին Խոսրովու միակ մնացած որդին և ժառանգն էր, և Արշակունեաց ցեղին անգութ կոտորածէն ազատելով Հռոմ ապաստան գտած էր։ Հոն իբրև Հայաստանի թագաժառանգ իշխան զարգացաւ Տրդատ. շատ պարագաներու մէջ իր հերակլեան ուժովը և դիւցազնա-կան քաջութեամբը նշանաւոր, և Հռո-մէական կայսրութեան օգտակար հանդի-սացաւ ։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և ազա-տիչ եղաւ կենացն Լիկինոսի և Դիոկղե-տիանոս կայսեր ։ Այս ինքնակալը երախ-տագիտութեամբ այն քաջ երիտասարդը թագաւոր պսակեց, եւ Հռոմէական բա-նակին օգնական տալով յուղարկեց հայ-րենական գահը ժառանգելու ։

Տրդատ Հռոմայ մէջ շատ իշխաններ բարեկամ ստացեր էր, և մանաւորապէս Կոստանդիանոս կայսրորդւոյն հետ սիրով

կապուած էր ։ Ուստի երբ իմացաւ որ Կոստանդիանոս ալ կայսրենալէն յետոյ դարձեր է 'ի քրիստոնէական կրօնս , ( զոր ինքըն Տրդատ երկար տարիներէ 'ի վեր ընդունած էր 'ի ձեռն Սրբոյն Գրիգորի ), շատ ուրախացաւ , և մտածեց որ իւր նոր կրօնակից կայսեր հետ բարեկամութիւնը նորոգէ , և այնպիսի սերտ դաշնակցութիւն մը ընէ՝ որով կարենայ Հայոց թագաւորութիւնը հաստատուն մնալ նաև յետ մահուան իւրոյ ։ Այս իւր խորհուրդը դիւրացնելու համար հետն առաւ զսուրբ Քահանայապետն Գրիգոր , և գնաց 'ի Հռոմ ։ Հոն իւր մեծազօր բարեկամին 'ի ճշմարիտ հաւատս դարձն շնորհաւորելով , նորա հետ կարևոր միջոցներ խորհեցաւ , զոր և հաստատուն դաշամբք կնքեցին ընդդէմ բռնաւոր պետութեանն Սասանեանց (1) որ Հայաստանի և Հռոմէական կայսերութեան հաւասարապէս սպառնացող թշնամի տէրութիւն մըն էր ։

Այս է ահա պատմութեան ցուցածը ։

Ուրեմն կարելի չէ՞ որ քրիստոնեայ տէրութեան մը հետ այս դաշնակցութեան

---

(1) Տես Ագաթանգեղոս , [Զենոբ . Մ . Խորենացի , եւ ասոնցմէ ետքը եկող բոլոր Հայ պատմիչները ։

Արշակունեաց թագաւորական ցեղը ջընջած և Սասանեանց իշխանութիւնը հիմնադրած էր, Հայոց Խոսրով Ա. Արշակունի թագաւորը դաւանօք սպաննեց։

Ս. Գրիգոր, այն փշաբեր ոստոյն ծաղիկը, քրիստոնէական կրթութիւն առաւ 'ի Կեսարիա։ Երբ մեծցաւ, և անդէն հօրը ըրած անօրէնութիւնն իմացաւ, իբրև քրիստոնեայ դիւցազն մը՝ իւր անձը ուզեց նուիրել Տրդատայ, որ մեծին Խոսրովու միակ մնացած որդին և ժառանգն էր, և Արշակունեաց ցեղին անդուլ կոտորածէն ազատելով Հռոմ ապաստան գտած էր։ Հոն իբրև Հայաստանի թագաժառանգ իշխան զարգացաւ Տրդատ. շատ պարագաներու մէջ իր հերակլեան ուժովը և դիւցազնական քաջութեամբը նշանաւոր, և Հռոմէական կայսրութեան օգտակար հանդիսացաւ։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և ազատիչ եղաւ կենացն Լիկիանոսի և Դիոկղետիանոս կայսեր։ Այս ինքնակալը երախտագիտութեամբ այն քաջ երիտասարդը թագաւոր պսակեց, եւ Հռոմէական բանակն օգնական տալով յուղարկեց հայրենական գահը ժառանգելու։

Տրդատ Հռոմայ մէջ շատ իշխաններ բարեկամ ստացեր էր, և մանաւորապէս Կոստանդիանոս կայսրորդւոյն հետ սիրով

կապուած էր ։ Ուստի երբ իմացաւ որ Կոստանդիանոս ալ կայսրենալէն յետոյ դարձեր է 'ի քրիստոնէական կրօնս, ( զոր ինքըն Տրդատ երկար տարիներէ 'ի վեր ընդունած էր 'ի ձեռն Սրբոյն Գրիգորի ), շատ ուրախացաւ, և մտածեց որ իւր նոր կրօնակից կայսեր հետ բարեկամութիւնը նորոգէ, և այնպիսի սերտ դաշնակցութիւն մը ընէ՝ որով կարենայ Հայոց թագաւորութիւնը հաստատուն մնալ նաև յետ մահուան իւրոյ ։ Այս իւր խորհուրդը դիւրացնելու համար հետն առաւ զսուրբ Քահանայապետն Գրիգոր, և գնաց 'ի Հռոմ ։ Հոն իւր մեծազօր բարեկամին 'ի ճշմարիտ հաւատս դարձն շնորհաւորելով, նորա հետ կարևոր միջոցներ խորհեցաւ, զոր և հաստատուն դաշամբք կնքեցին ընդդէմ բռնաւոր պետութեանն Սասանեանց (1) որ Հայաստանի և Հռոմէական կայսերութեան հաւասարապէս սպառնացող թշնամի տէրութիւն մըն էր ։

Այս է ահա պատմութեան ցուցածը ։

Ուրեմն կարելի չէ՞ որ քրիստոնեայ տէրութեան մը հետ այս դաշնակցութեան

---

(1) Տես Ագաթանգեղոս, Զենոբ · Մ · Խորենացի, եւ աոանցմէ ետքը եկող բոլոր Հայ պատմիչները ։

գաղափարին վրայ, կրօնական հնադան-դութեան մը ամենափոքր գաղափարն ա-ւելցուի ։

Ասիկա պատմութիւնը սրբագրել է ։

Իրերն այնչափ տրամաբանական են և մեզի այնպէս եղբակացուցիչ կերևին՝ որ անօգուտ կը համարէինք աւելի զբաղելու նոցա վերայ, եթէ անդրալեռնականք չատխպէին քանի մը լուսաբանութիւն տա-լու, իրենց դրութեան թիւրութիւնը բա-ցայայտելու համար ։

Ս. Սեղբեստրոս՝ որ նոյն միջոցին Հռո-մայ աթոռը նստած էր, ընդունեցաւ ըզ Սուրբն Գրիգոր ո՛չ իբրև ստորադրեալ ոք, այլ իբրև եղբայր, և իբրև [illegible] զայն ողջագուրեց ․ բայց ոչ եթէ ինքն էր որ այս տիտղոսը Հայոց Լուսաւորչին շը-նորհեց, ինչպէս որ անդրալեռնականք կը ջանան հաւատացընել ։ Վասն զի Ս. Գրիգոր արդէն ՚ի բազում ամաց հետէ ճանչցուած էր եպիսկոպոսապետ, պատրիարք և քա-հանայապետ, ինչպէս որ կը տեղեկանամք ՚ի պատմագրաց ։

Բաժնիս ապացուցանեմք ։

Ագաթանգեղոս, որ Տրդատ թագաւո-րին քարտուղարն էր, և ամէն պատմած-ները աչքովը տեսած էր, յայտնապէս կը գրէ թէ սուրբն Գրիգոր բոլոր Հայաստանն

'ի քրիստոնէութիւն վերադարձունելէն վերջը՝ ընտրուեցաւ իւր հոգեւոր հօտէն, և կեսարիա ղրկուելով Ղեւոնդ արքեպիսկոպոսէն ձեռնադրուեցաւ եպիսկոպոս, որով և ժառանգեց այն առաքելական Աթոռը զոր Բարթողոմէոս և Թադէոս առաքեալք հիմնադրած էին 'ի Հայաստան (1) ։

Այնուհետև իւր առաքելական իշխանութեանն համեմատ՝ ինքնագլուխ իւր եկեղեցին կառավարեց, և հարիւրաւոր եպիսկոպոսներ ձեռնադրեց ։ Եւ միթէ այս բաւական չէ՞ յապացուցանել Լուսաւորչի ինքնագլուխ քահանայապետութիւնը․ վասն զի ի՞նչպէս կարելի էր եպիսկոպոսներ ձեռնադրել, եպիսկոպոսարաններ հաստատել, և 'ի հիմանց նորոգել Հայոց եկեղեցին, եթէ այն եկեղեցւոյն վրայ առաքելական հեղինակութիւն ունենալը հանրածանօթ եղած չըլլար ։ Եւ ահա այն հեղինակութիւնն է որ առաքեալներէն անցաւ

---

(1) Կեսարիոյ Ղեւոնդ արքեպիսկոպոսն՝ որ զՍ․ Լուսաւորիչը եպիսկոպոս ձեռնադրեց, անոր կը գրէր․ « Դուն ընտրուեցար Ս․ Թադէոս և Բարթողոմէոս առաքելոց յաջորդելու համար․ որոնք քենէ առաջ ընտրեալներն էին․ միաքդ բեր անոնց գործքերը » եւ այլն (ՋԵՆՈՐ) ։

՚ի Ս. Լուսաւորիչ, և անկէ ՚ի սրբազան յաջորդս նորա, որով և մինչև ցայսօր Հայոց վեհ. կաթողիկոսը միայն իշխանութիւն ունի իւր հօտին եպիսկոպոսները ձեռնադրելու ։

Այն միջոցին Ս. Գրիգոր տակաւին Հռոմ գնացած չէր ։ Եթէ Սեղբեստրոս պապըն էր որ զԼուսաւորիչ կաթողիկոս ըրաւ, ի՞նչպէս կըլլայ որ նա կաթողիկոսական իշխանութիւնը արդէն շատ տարիներով առաջ անկախ կերպով կը գործադրէր, մըտքէն անգամ չանցնելով որ Հռոմայ հետ գոնէ գրով բանակցի ։ Ի՞նչպէս կըլլայ որ Հռոմէն գիր մը, դիտողութիւն մը չեկաւ ՚ի Հայաստան ։

Բայց աւելի զօրաւոր ապացոյց մ՚ալ ունիմք, որով կը հաստատեմք թէ Հայոց Նոր Առաքեալը ինքն Հռոմէն ընդունած չէ կաթողիկոսական պատիւը ։ Սուրբն Գրիգոր Հռոմ երթալէն շատ յառաջ իւր Գրիգորիս թոռը ձեռնադրեց եպիսկոպոս, և Վրաց և Աղուանից կաթողիկոս անուանեց ։

Սուրբն Գրիգոր ի՞նչպէս կրնար կաթողիկոս անուանել զոք՝ եթէ ինքը լոկ եպիսկոպոս մ՚էր այն ատեն, ըստ անդրալեռնականաց ։ Եւ որովհետև պատմութիւնը կը հաստատէ թէ ինքն էր որ Վրաց և Աղուանից առաջին կաթողիկոսն օծեց, ուրեմն

*ինքը. ի՞նչ պէտք ունէր շատ մը տարի վերջը Հռոմ երթալ որ քաղկեդոնական անուան ընդունի ՚ի պապէն Հռոմայ ։*

*Խնդիրը լուծուած է, և յիրաւի պատմական ստուգութիւններն պէտք է մէկը ըստ հաճոյս խեղաթիւրէ, որպէս զի իր կամքը կարենայ իբրև իրողութիւն քարոզել ։ Եւ ահա այսպէս կընեն Մօրէ և Ջէլէլինօ Քօնթօլէթօյի անդրալեռնական խմբագիրք ։*

*Խօսքերնիս առաջ տանիմք ։*

*— Ագաթանգեղոս ստուգապատում ժամանակակից պատմագիրը՝ զՍեղբեստրոս կանուանէ «օրթոդոքսական արքունական պալատին» ։ — Արդ, ո՞ւր կը մնան Քրիզոստոմ Յօհաննու, ծայրագոյն քահանայապետ, Գրիգորի Նիւսացւոյ տիտղոսներն՝ զոր անդրալեռնականք կ՚ընծայեն Հռոմայ պապին ։ — Բայց ուրիշ տեղ Ագաթանգեղոս Սեղբեստրոսի և Ս. Գրիգորի մէջ եղած հաւասարութիւնը ցուցընելու համար՝ երկուքն ալ քաղկեդոնական կ՚անուանէ ։*

*Դիտելու արժանի բան մըն է որ Ագաթանգեղեայ Յունական հին թարգմանութիւնը (որ ըստ ոմանց՝ բնագիրն է) զՍեղբեստրոս միշտ օրթոդոքսական կանուանէ, և Լուսաւորչի միայն կը պահէ քաղկեդոնական տիտղոսը ։*

*Արդ՝ կը հարցնեմք ու Մօրէ և Ջէլէ-*

Նոյն խմբագիրներուն․ ուր դրած են Ս․ Լուսաւորչի Հռոմայ պապին ըրած հպատակութեան ապացոյցները ։ Թո՛ղ ուշադրութեամբ և անկեղծութեամբ կարդան Ագաթանգեղեայ պատմութիւնը, որ և ինքն իսկ Հռովմայեցի ըլլալով կասկածելի չէ իբր Հայոց կողմնակից ոք, այլ ընդունուած է իբրև ճշմարտախօս պատմիչ մը, և շատ մեծ պատիւ միշտ ունեցած է Հայոց և օտարաց առջեւ ։ Թո՛ղ հոն կարդան Լուսաւորչի 'ի Հռոմ երթալուն պատմութիւնը և ըսեն մեզ թէ կրնա՞ն բառ մը գոնէ գտնել որ անդրալեռնականաց յառաջ բերած ստութիւնն ապացուցանէ ։

Բայց մեք ուրիշ ժամանակակից պատմագիր մ'ալ յիշեմք, մեր ըսածին վկայ լինելու ։ Սա ինքն է Զենոբ եպիսկոպոսը՝ որ բնիկ Ասորի էր, ուստի և սա Հայազգի չըլլալով, հետևաբար անկողմնակալ է իւր գրութեանը մէջ ։ —Արդ Զենոբ ևս ըզսուրբն Սեղբեստրոս կանուանէ պարզապէս «Հռոմայ արքեպիսկոպոս» ։ Կը հաստատէ նաև Լուսաւորչի 'ի Հռոմ ուղևորիլը, բայց Սեղբեստրոսին մեր Լուսաւորչին վրայ կարծեցեալ իշխանութեան և ոչ իսկ դոյզն բառ մը կակնարկէ (1) ։ Ընդհակառակն

(1) Ահա Զենոբայ խօսքերը կթարգմանեմք ․

այս քաղաքայապետաց կատարեալ հաւատարմութեանը վրայ զմեզ համոզելու համար կը պատմէ որ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի 'ի յիշատակ Հայոց դարձին իւր Եկեղեցւոյն մէջ հաստատած Աստուածպաշտութեան պահքը՝ սուրբն Սեղբեստրոս ալ ընդունեցաւ որ Հռոմ կատարեն, կըսէ, և կը յաւելու թէ Կոստանդիանոսէն և բոլոր Եգիպտոսի քաղաքներէն ալ ընդունուեցաւ այն ժամանակ։

Այո՛, Նախնի դարուց հայրապետք, որ աւելի Քրիստոսի փառքը՝ քան թէ իրենց անձին փառքը կփնտռէին, այսպէս կշարժէին ամէն ժամանակ։ վասն զի իրենք լաւ գիտէին թէ իրենց մէջ մեծը այն էր որ առաւել արդիւնք կրնար ցուցընել, ապա թէ ոչ՝ ամէնքն ալ իրարու եղբայր ըլլալնին գիտէին ըստ փրկ-

---

« Տրդատ Թագաւորին իմացուցին որ Կոստանդիանոս կայսրը Քրիստոսի Աստուծոյ հաւատացեր է . . . Տրդատ եւ սուրբ Գրիգոր « խորհեցան կայսեր երթալ, անոր հետ խաղաղութեան դաշնադրութիւն մը հաստատելու համար»։ — Ասկէց աւելի ի՞նչ բացայայտ խօսք կրնայ ըլլալ Լուսաւորչին 'ի Հռոմ ուղեւորելուն նպատակը ցուցնելու համար թէ էր ոէր, և ուխտ քաղաքական, եւ ո՛չ բնաւ հոգեւորականութեան։

Նոյն խմբագիրներուն. ո՛ւր դրած են Ս. Լուսաւորչի Հռոմայ պապին ըրած հպատակութեան ապացոյցները։ Թո՛ղ ուշադրութեամբ և անկեղծութեամբ կարդան Ագաթանգեղեայ պատմութիւնը, որ և ինքն իսկ Հռովմայեցի ըլլալով կասկածելի չէ իբր Հայոց կողմնակից ոք, այլ ընդունուած է իբրև ճշմարտախօս պատմիչ մը, և շատ մեծ պատիւ միշտ ունեցած է Հայոց և օտարաց առջեւ։ Թո՛ղ հոն կարդան Լուսաւորչի 'ի Հռոմ երթալուն պատմութիւնը և ըսեն մեզ թէ կրնա՞ն բառ մը գոնէ գտնել որ անդրալեռնականաց յառաջ բերած ստութիւնն ապացուցանէ։

Բայց մեք ուրիշ ժամանակակից պատմագիր մ'ալ յիշեմք, մեր ըսածին վկայ լինելու։ Սա ինքն է Զենոբ եպիսկոպոսը՝ որ բնիկ Ասորի էր, ուստի և սա Հայազգի չըլլալով, հետեւաբար անկողմնակալ է իւր գրութեանը մէջ։ —Արդ Զենոբ ևս ըզսուրբն Սեղբեստրոս կանուանէ պարզապէս «Հռոմայ արքեպիսկոպոս»։ Կը հաստատէ նաև Լուսաւորչի 'ի Հռոմ ուղևորիլը, բայց Սեղբեստրոսին մեր Լուսաւորչին վրայ կարծեցեալ իշխանութեան և ոչ իսկ դոյզն բառ մը կակնարկէ (1)։ Ընդհակառակն

(1) Ահա Զենոբայ խօսքերը կթարգմանեմք.

այս քահանայապետաց կատարեալ հաւասարութեանը վրայ զմեզ համոզելու համար կը պատմէ որ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի 'ի յիշատակ Հայոց դարձին իւր Եկեղեցւոյն մէջ հաստատած Առաջաւորաց պահքը՝ սուրբն Սեղբեստրոս ալ ընդունեցաւ որ Հռոմ կատարեն, կըսէ, և կը յաւելու թէ Կոստանդիանոսէն և բոլոր Եգիպտոսի քաղաքներէն ալ ընդունուեցաւ այն ժամանակ։

Այո՛, նախնի դարուց հայրապետք, որ աւելի Քրիստոսի փառքը՝ քան թէ իրենց անձին փառքը կփնտռէին, այսպէս կշարժէին ամէն ժամանակ։ վասն զի իրենք լաւ գիտէին թէ իրենց մէջ մեծը այն էր որ առաւել արդիւնք կրնար ցուցընել, ապա թէ ոչ՝ ամէնքն ալ իրարու եղբայր ըլլալնին գիտէին ըստ փըրկ-

---

« Տրդատ թագաւորին իմացուցին որ Կոս-
« տանդիանոս կայսրը Քրիստոսի Աստուծոյ հա-
« ւատացեր է . . . Տրդատ եւ սուրբ Գրիգոր
« խորհեցան կայսեր երթալ, անոր հետ խաղա-
« ղութեան դաշնադրութիւն մը հաստատելու հա-
« մար»։ — Ասկից աւելի ի՞նչ բացայայտ խօսք կրնայ ըլլալ Լուսաւորչին 'ի Հռոմ ուղեւորելուն նպատակը ցուցնելու համար թէ էր սէր, և սովոր քաղաքական, եւ ո՛չ բնաւ հպատակութեան։

չական պատգամին, թէ «Ամենքին դուք եղբարք էք»։

Բայց այն որ Սեղբեստրոսի (կամ Միլդիատէս պապին ըստ այլոց) մտքէն անգամ չէր կարող անցնիլ, այժմու պապականք կմտածեն, և անոնց ալ այնպէս մըտածելուն երաշխաւոր կըլլան, վասն զի իրենց տեսած արդի ամբարհաւան պապերէն կը չափեն խոնարհ և առաքինի նախնի դարուց պապերը, որ իրենք զիրենք «Ծառայ ծառայից Աստուծոյ». կանուանէին, և կը խոստովանէին համարձակ թէ իրենք ուրիշ բան չեն բայց եթէ պարզապէս «Եպիսկոպոս Հռոմայ»։

Լուսաւորչի 'ի Հռոմ գնացած ժամանակ՝ Հռոմայ պանծալի ժամանակներէն մէկն էր. պանծալի ոչ աշխարհական փառօք՝ այլ վասն զի նոյն ժամանակի հայրապետը ճշմարիտ քրիստոնէական խոնարհութեան հետեւող էր, ուստի և ընդունեցաւ զհայրապետն Հայոց՝ իբրև Նոր Առաքեալ մը։

Կրնա՞ր միտքէն անցընել թէ օր մը անդրալեռնականք իւր եղբայրական սէրը պիտի անարգեն, ու իրեն ընծայեն այնպիսի իշխանապետութիւն՝ զոր ինքը կանարգէր, և որոյ համար իւր արժանի յաջորդներէն մէկը Գրիգոր Ա. պապը

յայտնապէս կգրէր թէ «Ով որ ինքզինքը «հպարտութեամբ տիեզերական Եպիսկո- «պոս կանուանէ կամ անուանել թոյլ կու- «տայ, այնպիսին չէ թէ Քրիստոսի պաշ- «տօնեայ, այլ Նեռին կարապետն է»։ (Գիրք Ա. թուղթ Լ.)։ Եւ առ Պատրիարքն Կ. Պոլսոյ կը գրէր. «Ով որ ինքզինք աշխարհիս մէջ «եկեղեցւոյ գլուխ կանուանէ, չար, հե- «րետիկոս, հայհոյական, քրիստոնէու- «թեան դէմ, և սատանայական գործ մը «ըրած կըլլայ»։

Ի՞նչ աւելի քան զայս սարսափելի դատակնիք այժմու պապերուն դէմ..... Թո՛ղ պապականք մտածեն։

Այսպէս ահա ժամանակակից Հայոց պատմիչք բացայայտ կերպով կը ցուցընեն թէ Լուսաւորիչ Հռոմ երթալէն առաջ ալ կաթողիկոս էր, և ինքնագլուխ կը կառավարէր զեկեղեցին Հայոց։ Թո՛ղ անդրալեռնականք ժամանակակից Լատին պատմիչ մը ցուցընեն իրենց խօսքին 'ի վկայութիւն։ Բայց ո՛չ Լատին և ոչ Յոյն պատմիչք այսպիսի բան մը աւանդած չունին։ Ոչ ոք այդպիսի սուտ մը երազած ունի թէ Հայոց կաթողիկոսական իշխանութիւնը Հռոմէն սկսած ըլլայ։ Այդ կեղծիքը՝ հընարեցին պապականք շատ դար ետքը, այսինքն միջին դարերու մէջ. և եթէ ժա-

մանակ մը կրցան հաւատացընել. նոյն իսկ քանի մը միամիտ Հայ մատենագրաց տգիտութեան դարերու մէջ, այլ սուտը միշտ սուտ է, եւ անաչառ պատմութեան լոյսին առջեւ՝ կեղծիքը իբրեւ ղստուեր հալածեալ կ'անհետանայ։

Դ․

Արդ այս խնդիրը այսչափ փաստերով հաստատելնէս յետոյ, անցնիմք ուրիշ կէտի մը, որոյ վրայ կը ճոխանայ ՁԵԼԼՄ․։ Կըսէ թէ «Էջմիածնայ մէջ կաթողիկոսին «առջեւ չարական մը կերգեն, որոյ մէջ «կը հաստատուի թէ Լուսաւորիչ իւր իշ«խանութիւնը 'ի Հռոմայ ընդունած է։ «Արդ ի՞նչպէս կրնայ կաթողիկոսը այդ «չարականը լսել, և իւր աթոռին վրայ «չը սասանիլ»։

Ծիծաղելի՜ խօսքեր . . . Հայաստանեայց առաքելական Աթոռը ա՞յսչափ խարխուլ կենթադրէ՝ այդ վերապատուելին, որ ստութեան մը առջեւ սասանի։

Եւ ստութիւնը չի՛տ դիւրին է հերքել։

Նախ և առաջ, այս չարականը ոչ եթէ ըստ ենթադրութեան անդրալեռնեան դրագիտին, մինակ Ս. Էջմիածնայ մէջ, կամ մինակ կաթողիկոսին առջեւ կեր-

դուի, այլ բոլոր աշխարհի Հայոց Ս. եկեղեցեացը մէջ վերացման խաչի ութօրէից հինգերորդ օրը, որ նուիրուած է Եկեղեցւոյ։ Ասով կիմացուի որ այս առօթքը կաթողիկոսի կենաց պահպանութիւնը իրեն նպատակ չունի, ինչպէս որ Զէնէւթա կըսէ տգիտութեամբ, կամ խմաբեպատիր դիտմամբ։

Ահա այն շարականին խօսքերը. «Կեցո՛ զորդի ծառայի քո զոր 'ի Հռոմայ գահիցն վերապատուեցեր, ուր եդին զվէմն հաւատոյ հիման սուրբ Եկեղեցւոյ»։

Յիսուսեանք կը թարգմանեն խեղաթիւրելով այսպէս. «Կեցո՛ զորդի ծառայի քո Գրէգորէ զոր 'ի Հռոմայ անուան վերապատուեցեր, ուր վէմն հաւատոյ Պետրոս եդ զհիմն Ս. Եկեղեցւոյ»։

Ո՞ւր են Հայ բնագրին մէջ, Գրէգոր, — Պետրոս, — վէմն հաւատոյ բառերը։ Այս խօսքերը մասնաւոր դիտմամբ կաւելցնեն Հռոմէականք, որպէս զի իրենց խարխուլ դրութիւնը հաստատեն։

Արդ ուրեմն ուրիշ պատմական դաս մ'ալ տամք Զէնէւթայէ, և բոլոր Յիսուսեանց, և նոցա համամիտ պապական խըղճալեաց։

Հայոց եկեղեցւոյն ընդունած վերոյիշեալ շարականին հեղինակն է Աշոտ բա-

ընդպաշտ իշխանին՝ Պօղբէկ մականուանեալ, որ եօթներորդ դարուն մէջ ապրեցաւ։ Ստեփանոս Ասողիկ և Վարդան կը պատմեն որ այս մեծ իշխանը Տարօնոյ մէջ եկեղեցի մը շինել տուաւ յանուն Քրիստոսի Աստուծոյ, հոն զետեղելով Տէրունական հրաշափառ պատկերը, և այն առթով երգեց « Զօր[illegible] » շարականը, որոյ մէկ տունն է վերը յիշածնիս։ Այս շարականին խօսքերն ալ յայտնապէս կը ցուցընեն յօրինողին միտքը։

Աշոտ իշխանը առ Աստուած դոչելով «կեց[illegible] զոր ՚ի Հռոմայ դահիցն վերապատուեցեր », իւր հարազատ որդւոյն համար կաղօթէ, որ այն փրկչական հրաշափայլ պատկերը կոստանդնուպօլսէն բերած էր կայսերական ընծայ առ հայրն իւր։

Այս երգին մէջ Ս. Գրիգորի անուն չկայ և չէ՛ր կրնար իսկ գտնուիլ, որովհետև բնաւ նշանակութիւն մը չէր կարող ունենալ։ Բայց Յիսուսեան վերապատուելիք կաւելցնեն սուրբ Գրիգորի անունը, վասն զի իրենց շատ հարկաւոր է, նոր վարդապետութիւն մը հնարելու համար։

Շարականը կը շարունակէ « Զօր ՚ի Հռոմայ դահիցն վերապատուեցեր, ուր եղին զվէմն հաւատոյ հիման սուրբ Եկեղեցւոյ »։

Ըմէն հնախօսութեանց տեղեակ մարդ-գիտէ, ( բայց կերեւի թէ Չէլէպեօյէ խըմ-բագիրք եւ պապականք չեն ուզեր գիտ-նալ ) որ երբ Կոստանդիանոս կայսրը ըզ Բիւզանդիա նորոգեց եւ զՀռոմէականն ինք-նակալութիւն հոն փոխադրեց՝ Նոր Հռոմ անուանեց զայն ։

Թողեալ 'ի բաց զվկայութիւն պատմա-գրաց, զոր աւելորդ կը համարիմք այսպի-սի հանրածանօթ նիւթի մը հաստատու-թեան համար, բաւական ըլլայ Քրիստոսեան իմաստնոց յիշեցընել Կոստանդնուպօլսոյ տիեզերական ժողովոյն ( 381 թուականին ) Գ. կանոնը որ կըսէ. «Կոստանդնուպօլիս է Նոր Հռոմ» ։ Նմանապէս Քաղկեդոնի ժո-ղովոյն (481) ԻԵ. կանոնը կըսէ. «Սուրբ ե-կեղեցին Կոստանդնուպօլսոյ, որ է Նոր Հը-ռոմ» ։ — Այս երկու վկայութիւնները բա-ւական համարուին 'ի հաստատութիւն ճըշ-մարտութեան ։

Այս Նոր Հռոմն է զոր կը յիշէ Աշոտ Իշ-խանն քերթողաբար, փոխանակ Կոստանդ-նուպօլիս ըսելու. վասն զի անկէ ընդունե-ցաւ Պորփիւրոժէնեան տիտղոսը եւ իւր տիրած գաւառին իշխանութիւնը ։ Իսկ հին Հռոմայ հետ երբէք յարաբերութիւն չունեցաւ իւր բոլոր կենացը մէջ. ուստի եւ ի՞նչպէս կարող էր չարականին մէջ ըսել թէ «Հռո-

պսակն Հռոմէն ընդունեցայ ես իմ պապէս, և այս Փրկչական պատկերը ։

Նոյն խակ գործածած թագ բառն ալ ուրիշ ապացոյց մըն է մեր խօսքին, վասն զի Աշոտոյ ժամանակ՝ Հռոմայ պապը ուրար միայն ունէր և ոչ թագ, այսինքն պատրիարքական ուրար և ոչ թէ Թագաւորական թագ, զոր շատ ետքը կրցան ձեռք ձգել պապերը, հակառակ Ս. Աւետարանի հրամանաց ։ Ապա ուրեմն եթէ Աշոտ իշխանն՝ Հռոմայ պատրիարքական աթոռն ուզած ըլլար հասկըցընել՝ թագ բառը չէր կարող գործածել ։

Հայկաբան կըմբռնեն մեր ըսածը, բայց ի՞նչպէս հասկցնեմք Լատիններու, կամ լատինացեալ Հայերու ։

Անցնիմք ետեւի խօսքերուն ։

Ի՞նչ կիմացնէ Աշոտ իշխանն այս խօսքերով, “Ուր եղին զվէմն հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ ” ։ — Տարակոյս չը կայ որ կուզէ ակնարկել կոստանդնուպօլսոյ տիեզերական սուրբ ժողովոյն առաքելաշաւիղ եպիսկոպոսաց հաւատոյ դաւանութեանը ։ — Եթէ անդրալեռնականաց թարգմանածին պէս յիրաւի Պետրոս առաքելոյն վրայ խօսել ուզէր, անանկ պատկառելի անուն մը ինչո՞ւ պիտի չը յիշատակէր բանաստեղծ իշխանը ։ Դարձեալ, ինչո՞ւ պիտի գրէր “ ուր եդին ” յոգ-

նակի ։ Եթէ Պետրոսի համար է իւր միտքը՝ պէտք էր որ ըսէր « ուր եք », եզակի թըւով, ինչպէս որ յայտնի է նոյն իսկ համբակաց ։

Բայց Հռոմ և իւր հաւատարիմ Յիսուսեանները՝ ոչ թէ միայն շարականներու իմաստները կաղապարեցին, ինչպէս տեսանք, այլ և Ս. Աւետարանին իսկ այնպիսի գաղափարներ կընծայեն՝ որք զայն ուսուցանող եկեղեցւոյ վարդապետին միտքէն ու կամքէն շատ ու շատ հեռու են ։

Մեք գիտեմք որ Լատինացւոց Հայերը զՀռոմ՝ շողոքորթելու համար՝ այս շարականը թարգմանութեան մէջ եղծեր այլափոխեր են, և միանգամայն ասոր հեղինակ հռչակեր են զԳրիգոր Մագիստրոս մեծ իշխանը, որոյ որդւոյն Գրիգոր Բ. Կաթողիկոս ըլլալով ԺԲ. դարուն մէջ շատ մեծ նպաստներ ըրած էր Փռանկներուց. ուստի և Գրիգոր Է. պապէն սիրալիր հրաւէր ընդունելով, գնաց 'ի Հռոմ՝ յուխտ գերեզմանաց սուրբ առաքելոյն Պետրոսի և Պօղոսի ։ Արդ, կըսեն, երբ Գրիգոր վկայասէր դարձաւ պատուով 'ի Հռոմայ, Մագիստրոս որդին ուրախութենէն այս շարականն յօրինեց, իւր որդւոյն համար աղօթելով ։

Բայց այս ենթադրութիւնն ընդդէմները՝

Նոր ապացոյց մ՚ալ կուտան իրենց պատմական տգիտութեանը․ վասն զի,

Ա. Աշոտ իշխանը Գրիգոր Մագիստրոսէն հինգ դար առաջ փայլած էր, ուստի այս վերջինէն շատ յառաջ այս շարականը յօրինուած էր և բոլոր Հայոց եկեղեցեաց մէջ կերգուէր․ ինչպէս որ հին պատմագիրներն ալ կը հաստատեն։ Ուրեմն արդէն հինգ հարիւր տարի յառաջ շինուած շարականը Մագիստրոս չէր կրնար շինած ըլլալ։

Բ. Երբոր Գրիգոր Բ. Հռոմ գնաց և դարձաւ, իր հայրը (Մագիստրոս) երկար տարիներէ 'ի վեր արդէն մեռած էր, ուստի և չէր կրնար իւր որդւոյն համար շարական շինել։

Գ. Սուրբ Ներսէս Լամբրոնացի արքեպիսկոպոսն (որոյ վկայութիւնն չկրնար կասկածելի ըլլալ անդրալեռնականաց) որ Գրիգոր Բ.էն քիչ ետքը փայլեցաւ, իր գրուածքներուն մէջ երկու անգամ կը յիշատակէ այս հին շարականը, բայց Գրիգոր Մագիստրոսի չընծայեր զայն։ Ինքը պարտաւոր էր շատ լաւ և հաւաստի կերպով գիտնալ, որովհետեւ գրեթէ ժամանակակից էր, և ոչ այսչափ միայն, այլ նաև կաթողիկոսական դիւաններն աչքին առջև էին, և ուղղակի ու սերտ յարաբե-

քութիւններ ունէր Գրիգոր Բ. ի յաջորդող կաթողիկոսաց հետ ։

Դ. Նոյն մեծիմաստ Ներսէս Լամբրոնացին յայտնապէս կը գրէ, որ այս երգին մէջ յիշուած Հռոմը՝ Կոստանդնուպոլիսն է, Նոր Հռոմ, ուր Հայ իշխանք և թագաւորք միշտ վերապատուեցան, կըսէ, ըստ պատմութեան ։

Կարծեմ թէ բաւականէն աւելի հաստատուեցաւ որ Անդրալեռնականաց գործն է պատմութիւնն այլայլել, և իրենց բերած վկայութիւնները ըստ կամաց ծուռ թարգմանել և յաւելուածներով զարդարել ։

Վերոյիշեալ տեղեկութիւնները Զէնոբ քաղած է եղեր լատինահայ գերապայծառի մը հրատարակած մէկ պապամիտ գրութենէն, զոր Ցիտուսեան լրագիրը գովասանութեամբ կը յիշատակէ ։ Ցիտուսեանի մը տուած գովեստը, բաւական իսկ է ցուցանելու թէ ի՛նչ ոգւով գրուած պիտի ըլլայ այդ ճառը, որոյ նպատակն է եղեր ապացուցանել թէ « Հայոց եկեղեցին միշտ ճանչցած է Հռոմայ պապերուն գերիշխանութիւնը » ։

Մեզի ծանօթ չէ այդ ճառը, և չեմք ալ ցաւիր կարդացած չըլլալնուս. վասն զի այսպիսի սուտ և փուտ պատմութիւննե-

րով և աղաւաղեալ թարգմանութիւննե-րով յերկուքեալ գրութիւն մը՝ լրջամիտ ըն-թերցման արժանի բան մը համարիլն ան-գամ անտեղի կերեւի խոհական մտաց։

Այսչափ առ այս։

Գալով այն երեւակայական երկխուղին զոր Ձէնիթ և լը Մօնդ կուզեն ընծայել Հա-յոց Մայր աթոռոյն՝ կը պատասխանեմք։

Այն հովուապետական սուրբ աթոռոյն վրայէն, ուր իր որդւոց մեծարանքն ու միաձայն ընտրութիւնը զինքը բազմեցու-ցած են, ամենայն Հայոց սրբազնակատար կաթողիկոսը՝ միայն հայրական սիրոյ ակ-նարկներ կրնայ արձակել իւր սիրելի որ-դւոցը վրայ, որոց օրհնութիւններն և եթ կը բարձրանան կը հասնին իրեն։

Հռոմայ թագակալ—եպիսկոպոսը Ս. Պետրոսի բեմին վրայէն Հռոմայ և տիեզերաց (Urbis et orbi) օրհնութիւնը մեծամտու-թեամբ տուած ատեն, լալագին հառա-չանաց և ողբոց դառնութեան ձայներ այ չե՞ն հասնիր անոր ականջը . . . այն հա-ռաչանքները՝ զոր Մենթանայի, Անգոնա-յի, Բերուճիայի, Հռոմայի փողոցներուն որ-բացեալ որդիքն ու այրիացեալ կանայքը մէջտ կը բարձրացընեն յԱթոռ Բարձրե-լոյն . . .

Լսենք Վիքթոր Հիւկոյի ցաւագին տողերը՝ զոր միայն Անդոնայի մէջ այժմու պապին ձեռքով սպաննուածներուն համար կը գրէ ։ իսկ անկէ յառաջ ու վերջը զոհուած այնքան բիւրաւոր անմեղները ․․․ ։

Ըսպաննելովք կը լեցուին Անքոնայի բերդերը,
Պապըն Պիոս հրացաններ կուտայ իւր խեղճ գառներն .
Անդին կընէ Պատարագ , անդին կրա՛կ կը գոչէ .
Բարմէճճիանի նախ կիյնայ, ապա միւսներն հետզհետէ ։
Կիյնան անմռունչ կը մեռնին քաջ դիւցազունք հայրենեաց,
Ու կերթան հոն բողոքել քահանայէն առ Աստուած ։ —

Հա՛յր սուրբ, ձեռքերըդ ծածկէ՛, պարեգօտիդ թեզանով,
Հա՛յր սուրբ, ճերմակ հողաթափդ է ներկըւած արիւնո՛վ .
Թունաւորող պապ Բորճիա քեզ կը ժըպտի դժոխքէն...
Ո՛րչափ մեռան, ո՛րչափ պիտի մեռնին քո ձեռքէն...
Ո՛վ Տէր, այսօր քու հօտիդ կառավարողն է 'ի խաւար
Ոչ եթէ քաջ Հովիւը, այլ ո՛հ դահիճ չարափառ ։

Ուրեմն ո՞վ պէտք է սաստէր, Հայոց խոնարհ հովիւն որ միայն փրկութեան ճամբան կը ցուցանէ այն հաւատարիմ հօտին. յորմէ ընտրուած է, թէ Հռոմայ քահանայապետ — Թագաւորը՝ որուն ականջացը անդադար պիտի որոտան Քրիստոսի այս ահաւոր խօսքերը. « իմ թագաւորութիւն չէ՛ յայսմ աշխարհէ » ․ ․ ․ ։ Եւ կամ սուրբ Բեռնարդոսի առ Եւգինէոս Գ. պապ ըրած այն սոսկալի մարգարէութիւնը թէ « Որովհետեւ դու « փառասիրութեանդ աչք տնկեցիր հոգևոր « և մարմնաւոր իշխանութեանց , երկուքն « ալ դու միանգամայն պիտի կորսնցնես » ։

# ՄԱՍՆ Բ.

## Ա.

Մինչեւ հիմա ջանացինք ցուցնել թէ ՋԷԼԷԼԸու և լը Մծոր օրագիրները Հայոց եկեղեցւոյ դէմ անգրալեռնական յարձակում մը ըրած ժամանակ՝ բերած վկայութիւննին և յիշատակած հայկական դէպքերը որչափ այլայլած էին, սխալ թարգմանած ու կերպարանափոխ ըրած ։

Կը մնայ մեզ արդ հերքել այս երկու մոլեռանդն օրագրաց և իրենց արբանեկաց՝ մեր սուրբ Եկեղեցւոյն դէմ ըրած քանի մը ուրիշ զրպարտութիւնները ։ Կուզեմք պատառել այն սեւաստուեր քօղը՝ զոր չեն խղճեր տարածել Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյն վրայ ։ և երբ՝ իբր ծառայք անպիտանք՝ մեր պարտքը կատարեալ 'ի գլուխ հանեմք, մեր ուխտը պիտի ըլլայ խնդրել յԱստուծոյ որ իւր անըստուեր լոյսը ճառագայթէ 'ի բարձանցն երկնից այն բարեմիտ անձանց խղճին վրայ՝ որ միամտաբար հաւատք կ'ընծայեն անգրալեռնական չարախօսութեանց, և կը գայթակղին Հայաստանեայց Եկեղեցւոյ ուղղափառութեանը վրայ ։

Կը մաղթեմք միանգամայն որ Աստ-

ուածն ողորմութեանց խնայէ իր արդարադատ դատաստանին մէջ այն անձանց վրայ որ ճշմարտութեան դէմ պատերազմելով, իրենց վրայ կը հրաւիրեն Մարգարէին այն վայը որ կըսէ, «Վա՜յ այնոցիկ որ զլոյսն առնիցեն խաւար»։

Նախկին դարերուն մէջ՝ Յոյները զըրպարտեցին զեկեղեցին Հայաստանեայց իբրու թէ Եւտիքեսի մոլորութիւնն ընդունած ըլլայ։ Այս թիւր կարծիքը՝ տարածուեցաւ ուրիշ ազգերու մէջ ալ, որ հաւատս ընծայելով Յունական զրպարտութեանց՝ տարակուսեցան Հայոց ուղղափառութեանը վրայ։ Բայց Հայաստանեայց Եկեղեցւոյ սուրբ Հայրքը՝ պաշտպանեցին իրենց պաշտած առաքելուսոյց հաւատքը, և մեծ հայրապետն Ներսէս Շնորհալի՝ սքանչելի աստուածաբանութեամբ փարատեց զրպարտութեան մառախուղը, և ապացուցուց իբրեւ զլոյս՝ Հայաստանեայց Եկեղեցւոյ ուղղափառ դաւանութիւնը։ Այնուհետեւ ոչ միայն Բիւզանդական պատրիարքները, այլ և շատ պապեր խոստովանեցան գրով անգամ Հայաստանեայց եկեղեցւոյ անսատերիւր ուղղափառութիւնը։

Յիշենք օրինակի համար զԳրիգոր ԺԳ․ պապը, որ 1584ին այսպէս կը գրէր։ «Ա-

# ՄԱՍՆ Բ.

## Ա.

*Մինչեւ հիմա ջանացինք ցուցընել թէ Ջէմսըն և Լը Մօռ օրագիրները Հայոց եկեղեցւոյ դէմ անգրալեռնական յարձակում մը ըրած ժամանակ՝ բերած վկայութիւննին և յիշատակած հայկական դէպքերը որչափ այլայլած էին, սխալ թարգմանած ու կերպարանափոխ ըրած ։*

*Կը մնայ մեզ արդ հերքել այս երկու մոլեռանդն օրագրաց և իրենց արբանեկաց՝ մեր սուրբ Եկեղեցւոյն դէմ ըրած քանի մը ուրիշ զրպարտութիւնները ։ Կուզեմք պատասել այն սեւասաուեր քօղը՝ զոր չեն խղճեր տարածել Հայաստանեայց սուրբ Եկեղեցւոյն վրայ ․ և երբ՝ իբր ծառայք անպիտանք՝ մեր պարտքը կատարեալ 'ի գլուխ հանեմք, մեր ուխտը պիտի ըլլայ խնդրել յԱստուծոյ որ իւր անըստուեր լոյսը ճառագայթէ 'ի բարձանցն երկնից այն բարեմիտ անձանց խղճին վրայ՝ որ միամտաբար հաւատք կ'ընծայեն անդրալեռնական չարախօսութեանց, և կը դայթակղին Հայաստանեայց Եկեղեցւոյ ուղղափառութեանը վրայ ։*

*Կը մաղթեմք միանգամայն որ Աստ-*

ուածն ողորմութեանց խնայէ իւր արդարադատ դատաստանին մէջ այն անձանց վրայ որ ճշմարտութեան դէմ պատերազմելով, իրենց վրայ կը հրաւիրեն Մարգարէին այն վայը որ կըսէ, « Վա՜յ այնոցիկ որ զչարն ասիցեն բարի »։

Նախկին դարերուն մէջ՝ Յոյները զըրպարտեցին զԵկեղեցին Հայաստանեայց իբրու թէ Եւտիքեան մոլորութիւնն ընդունած ըլլայ։ Այս թիւր կարծիքը՝ տարածուեցաւ ուրիշ ազգերու մէջ ալ, որ հաւատս ընծայելով Յունական զրպարտութեանց՝ տարակուսեցան Հայոց ուղղափառութեանը վրայ։ Բայց Հայաստանեայց Եկեղեցւոյ սուրբ Հարքը՝ պաշտպանեցին իրենց պաշտած առաքելուսոյց հաւատքը, և մեծ Հայրապետն Ներսէս Շնորհալի՝ սքանչելի աստուածաբանութեամբ փարատեց զրպարտութեան մառախուղը, և ապացուցուց իբրև լոյս՝ Հայաստանեայց Եկեղեցւոյ ուղղափառ դաւանութիւնը։ Այնուհետև ոչ միայն Բիւզանդական պատրիարքներ, այլ և շատ պապեր խոստովանեցան գրով անգամ Հայաստանեայց եկեղեցւոյ անստերիւր ուղղափառութիւնը։

Յիշենք օրինակի համար Գրիգոր ԺԳ. պապը, որ 1584ին այսպէս կը գրէր։ « Ա-

„պաշտքէն ազգ. Հայոց բազմաթիւ, և իբր
„անհամար, երեւելի յոյժ հնութեամբ և
„անուամբ՝ առաւել քան զամենայն ժո֊
„ղովուրդս արեւելեայց, ամենայնիւ գովե֊
„լի է 'ի փոյթ քրիստոնէական կրօնից և
„յարիական հաստատութեան. Այսպէս յօ֊
„ժարութեամբ ցանկացեալ մեր ըստ ձե֊
„ռընհաս լինելոյ նպաստամատոյց լինել
„յօգնաթիւ և բարեհամբոյր ազգին, ա֊
„ռաւելապէս առ փրկութիւն հոգւոց, և
„առ հաստատուն պահպանութիւն և ա֊
„ճումն սրբոյ կրօնի և ուղղափառ հաւա֊
„տոյ . . . „ և այլն.

Այսօրուան օրս, չկայ աստուածաբան մը, — իւր հմտութեամբը յիրաւի աստ֊ուածաբան կոչուելու արժանի, — որ չը գիտնայ թէ Հայերը որչափ հեռի են Նե֊ստորեան մոլորութենէն, որ ուրիշ հերե֊տիկոսաց հետ և զայն հերձամիտ և մոլեռանդն Յոյն կրօնաւորը նզոված են և միշտ կը նզովեն, ըստ ասից երջանկայիշա֊տակ Գրիգոր Դ. կաթողիկոսի. «Նզովեմ և զանմտաբերիչն Եւտիքէս», որ զմիութիւն Աստուա֊ծութեանն և զմարմնոյն շփոթմամբ դա֊ւանէր »: — Բայց Յիսուսեանց օրագիրները Զէթիւտ և «Մօնդ» տակաւին կը շարունակեն յունական զրպարտութիւնը, զՀայս Եւտի֊քեան կոչելով: Ասով յայտնի կը ցուցնեն

կամ իրենց անարդարանալի ազդեցութիւնը և կամ իրենց արտին չարութիւնը։

Թո՛ղ ընտրեն և ըսեն մեզ թէ երկուքէն ո՞րը կընդունին, թանձրամիտ ազդեցութիւնը, թէ՝ խորամանկ չարութիւնը։ Բայց ո՛րն ալ ընտրելու ըլլան՝ չկայ առեան մը որոյ առջեւ կարենան արդարանալ, և ծանր դատապարտութիւն չընդունիլ։

Շարունակենք։

Անդրալեռնականք կուզեն հաւատացընել թէ Հայոց եկեղեցին մինչեւ Քաղկեդոնի ժողովքը Հռոմայ հնազանդ էր, և թէ Լէոն Ա. պապին օրէն սկսեալ Հռոմէն բաժնուեցաւ։ — Բայց մեք կը հաստատեմք որ Հայաստանեայց եկեղեցին կը մերժէ և միշտ մերժած է այն գերիշխանութիւնը՝ զոր Հռոմայ եպիսկոպոսը անձամբ անձին շնորհած է, և որով կուզէ խրոխտալ կաթողիկէ Եկեղեցւոյ վրայ։

Պապական լուծը անծանօթ էր Արեւելեան եկեղեցւոյն մինչեւ իններորդ դար։ Այս ժամանակն էր որ Հռոմայ եկեղեցին ձեռներէց եղաւ, յանուն Աստուծոյ, տիրապետելու բովանդակ եկեղեցեաց վրայ։ Նախկին ութը դարերը՝ բնաւ գաղափար չունէին այսպիսի անտեղի և հակաքրիստոսական պահանջման մը վրայ զոր ահա այսօր Զէֆիրը, անդրալեռնականաց դրօշակիրը։

նոր եռանդեամբ մը սկսած է պաշտպանել, մեկնաբանելով Վոնիփակիոս Ը. պապին անուանի միացած մեծապահանջ կոնդակը, որոյ սկիզբն է «Unam sanctam», պապական գերիշխանութիւնը տարածել ջանալով ոչ միայն քրիստոնէական եկեղեցւոյ վըրայ, այլ նորա լուծին տակն առնուլ և նըուաճել նաև թագաւորական աթոռները։ — Ի՞նչ զարմանալի պահանջմունք, և ի՜նչ անհաւատալի յոյս և երազ ԺԹ. դարուս մէջ։

Հայաստանեայց սուրբ Եկեղեցին՝ անդրանիկ յառաջելոց իւրոց սրբոց, Հռոմայ պապերուն հետ հնազանդական յարաբերութիւն մը ունեցած չէ՛ բնաւ երբէք։ Լուսաւորչին Հռոմ ըրած ուղեւորութեան ճիշդ և պատմական պատճառները արդէն վերը բացատրեցինք համառօտիւ։ Այս անցողական և պատահական յարաբերութիւնը՝ բնաւ ազդեցութիւն չունեցաւ Հայոց առաքելական եկեղեցւոյ անկախութեան և նուիրական իրաւանցը վրայ, որ չարունակուեցաւ դարուց 'ի դարս մինչեւ այժմու վեհ. կաթողիկոսը։

Ռուբինեան թագաւորաց տկարութեան ժամանակը՝ պապերը ուզելով օգուտ քաղել քաղաքական դժբաղդ պարագաներէն խոստացան դրամով օգնել Հայոց, եթէ յանձնառու ըլլան Հռոմայ Եկեղեցւոյն։ Նոյն-

պիսի դաշնադրութիւն էր զոր և Բիւզանդիոյ կայսերաց հետ կընէին, միշտ խոստանալով և այնպիսի յոյսեր տալով, զոր կատարելը՝ ձեռքերնին չէր։

Մինչև այն օրը՝ Հայաստանեայց Եկեղեցին մի էր և անբաժան։ Պապական կոնդակաց, Նուիրակաց և մանաւանդ կարըստական արծաթոյն շնորհիւը՝ սև հերձուածը, աւաղ, սպրդեցաւ այն սխրալի Եկեղեցւոյն մէջ ալ, որ իր միութեամբը նախանձելի հանդիսացած էր տիեզերական եկեղեցւոյն առջևը։

Ռուբինեան — Լուսինեան թագաւորներ որոց ծագումը լատինական ըլլալով, Հռոմէական եկեղեցւոյ մէջ ծնած էին և Լատին մնացած, բնականապէս չէին կրնար Հայաստանեայց Եկեղեցւոյ վրայ եռանդուն սէր մը զգալ, ուստի և չէին խղճեր քաղաքական յոյսերու զոհել այն բազմադարեան սրբազան իրաւունքները՝ որ Հայոց շատ աւելի սիրելի էին քան իրենց քաղաքական իրաւունքները։

Սակայն Լեւոն Ե. կոստանդին Գ. և Գուիտոն թագաւորները՝ իրենց տխուր և աղետալի փորձովը սովրեցան որ Հռոմայ արծաթովը գնեցին իրենց արժանաւոր անարգութիւնն ու մահը, առանց կարենալու իրենց խարխուլ գահը հաստատել, զոր

Նոր եռանդեամբ մը սկսած է պաշտպանել, մեկնաբանելով Վոնիփակիոս Ը. պապին անուանի մնացած մեծապահանջ կոնդակը, որոյ սկիզբն է «Unam sanctam», պապական գերիշխանութիւնը տարածել ջանալով ոչ միայն քրիստոնէական եկեղեցւոյ վըրայ, այլ նորա լուծին տակն առնուլ և նըւաճել նաև թագաւորական աթոռները: — Ի՞նչ զարմանալի պահանջմունք, և ի՜նչ անհաւատալի յոյս և երազ ԺԹ. դարուս մէջ:

Հայաստանեայց սուրբ Եկեղեցին՝ անդրստին յառաքելոց իւրոց սրբոց, Հռոմայ պապերուն հետ հնազանդական յարաբերութիւն մը ունեցած չէ բնաւ երբէք:

Լուսաւորչին Հռոմ ըրած ուղեւորութեան ճիշդ և պատմական պատճառները արդէն վերը բացատրեցինք համառօտիւ: Այս անցողական և պատահական յարաբերութիւնը՝ բնաւ ազդեցութիւն չունեցաւ Հայոց առաքելական եկեղեցւոյ անկախութեան և նուիրական իրաւանցը վրայ, որ չարունակուեցաւ դարուց 'ի դարս մինչեւ այժմու վեհ. կաթողիկոսը:

Ռուբինեան թագաւորաց տկարութեան ժամանակը՝ պապերը ուզելով օգուտ քաղել քաղաքական դժբաղդ պարագաներէն խոստացան դրամով օգնել Հայոց, եթէ յանձնառու ըլլան Հռոմայ հնազանդիլ: Նոյն-

պիսի դաշնադրութիւն էր զոր և Բիւզանդիոյ կայսերաց հետ կընէին, միշտ խոստանալով և այնպիսի յօյսեր տալով, զոր կատարելը՝ ձեռքերնին չէր։

Մինչեւ այն օրը՝ Հայաստանեայց Եկեղեցին մի էր և անբաժան։ Պապական կոնդակաց, նուիրակաց և մանաւանդ կորստական արծաթոյն շնորհիւ՝ սև հերձուածը, աւա՜ղ, սպրդեցաւ այն սիրալի Եկեղեցւոյն մէջ ալ, որ իւր միութեամբը նախանձելի հանդիսացած էր տիեզերական եկեղեցւոյն առջեւը։

Ռուբինեան—Լուսինեան թագաւորներ որոց ծագումը լատինական ըլլալով, Հռոմէական եկեղեցւոյ մէջ ծնած էին և Լատին մնացած, բնականապէս չէին կրնար Հայաստանեայց Եկեղեցւոյ վրայ եռանդուն սէր մը զգալ, ուստի և չէին խղճեր քաղաքական յօյսերու զոհել այն բազմադարեան սրբազան իրաւունքները՝ որ Հայոց շատ աւելի սիրելի էին քան իրենց քաղաքական իրաւունքները։

Սակայն Լեւոն Ե. կոստանդին Գ. և Գուիտոն թագաւորները՝ իրենց տխուր և աղետալի փորձովը սովրեցան որ Հռոմայ արծաթովը գնեցին իրենց արժանաւոր անարգութիւնն ու մահը, առանց կարենալու իրենց խախուտ գահը հաստատել, զոր

մանաւանդ բոլորովին կործանեցին, իրենց
լատինասիրութեամբը՝ ազգին սէրը կոր-
սընցնելով։

Նոյն միջոցներուն՝ Հռոմ Կիլիկիոյ եր-
կիրը ղրկեց Դոմինիկեան և Ֆրանչիսկեան
քարոզիչները, որ Հայերն իրենց որսան։ Այս
մոլեռանդն աբեղաները՝ փոխարէն այն
ասպնջականութեան զոր Հայոց սուրբ Ա-
թոռը շնորհեց, տալով նոցա հրաման ա-
մենայն ազատութեամբ իրենց կրօնը պաշ-
տելու նոյն իսկ Սիս մայրաքաղաքին մէջ,
այս նենգամիտ պատրիները, կըսեմք, զեղ-
ծանելով իրենց ընդունած հիւրընկալու-
թեամբը, սկսան որոմն սերմանել, Հայոց
Եկեղեցին ու ծէսերը անարգել և մոլորա-
կան ցուցնել, և միամիտներուն խիղճը վախ-
ցընելով, հայրենի սուրբ Եկեղեցիէն բա-
ժանել։

Այս կերպով սկսաւ հերձուած մը, ո-
րոյ թէպէտև կուսակից գտնուեցաւ և Գր-
րիգոր Անաւարզեցի նախապաշարեալ կա-
թողիկոսը, բայց Ունիթօրներու ամէն ճիգն
ընդունայն եղաւ։ Բոլոր ազգը, կղերն և
աշխարհականք, ընդդիմացան քաջու-
թեամբ, և իրենց առաքեալներէն և սուրբ
Լուսաւորչէն ընդունած հաւատքին և ծէ-
սերուն և ոչ դոյզն փոփոխութիւն մը յանձն
առին, թէև Հռոմ մեծամեծ խոստմունք-

ներ կընէր, եւ Լուսինեան Թագաւորք մինչեւ անգամ բռնութիւն ձեռք առած ամենայն ջանք ըրին որ Հռոմայ կամքը կատարեն. Բայց իզո՛ւր ... Հայաստանեայց եկեղեցին յաղթող ելաւ այս փորձանաց մէջ, և աշխարհ զարմացաւ այն քաջ ժողովրդեան վրայ՝ որ առ ոտն կոխելով զամենայն խաբէական խոստմունս պապական աթոռոյն, յանձն առաւ կորսնցնել իւր թագաւորական գահը, քան թէ վատութեամբ թողուլ՝ որ իւր հայրենի եկեղեցւոյն ազատութիւնը կողոպտուի.

Բայց Չէլէմու այլափոխելով ճշմարիտ պատմութիւնը կըսէ. «Ազգին մեծագոյն մասն ընդունեցաւ Հռոմայ հպատակութիւնը»: Սակայն Յիսուսեան Պատրին շատ լաւ գիտէ որ եթէ Հայերն յիրաւի ընդունած ըլլային պապական լուծը, Հռոմ խոստացած խաչակրութիւնները կհանէր՝ Հայոց օգնութեան հասնելու, և չէր թողուր որ սակաւաթիւ բայց դիւցազնասիրտ ժողովուրդ մը բարբարոսաց ահագին բանակներու դէմ իւր կրօնական եւ քաղաքական աթոռները պաշտպանելով սուր ի ձեռին, վերջին արեան կաթիլները թափէ, իւր սուրբ եկեղեցեաց եւ արքունեաց աւերակացը տակ թաղուելով զարմանալի քաջութեամբ.



Չէմպըռ եւ Լը Մօռ տպահով ըսելով որ իրենց Եւրոպացի ընթերցողները Հայոց պատմութեան տեղեկութիւն չունին, ուզած կերպովին կը պատմեն, կաւելցընեն, կը պակսեցընեն և հերքող մը չունենալով՝ ամենայն ինչ առանց դժուարութեան կը հաւատացընեն. Այսպէս ահա Պատրիներուն սերմանած պապական հերձուածը իբրեւ ազգին մեծագոյն մասէն ընդունած ձեւացընելէն ետքը, կաւելցընեն թէ՝ «շատ մը «եպիսկոպոսք ապստամբեցան կաթողիկո-«սէն և ինքնագլուխ եղան, որովհետեւ «կաթողիկոսները չընդունեցան Հռոմայ «հնազանդիլ, ուստի Աստուծոյ բարկու-«թիւնը ծանրացաւ անոնց վրայ».

Սոյն և Աղթամարայ կաթողիկոսութեանց ծագման ներքին պատճառները՝ Հայոց շատ յայտնի են, բայց հիմա անդրալեռնականներէն կսովրիմք նոր և անակնունելի պատճառ մը: Սիս և Աղթամար ապստամբեր են եղեր, անոր համար որ Հայոց եկեղեցին չէ ուզեր Պապին գլուխ ծռել: Եթէ այդ այդպէս է, կը հարցընեմք, ինչու այդ ապըստամբները Հռոմայ չհնազանդեցան, և ոչ միայն իրենց օրինաւոր կաթողիկոսէն ինքնագլուխ եղան, այլ և մինքերնէն անդամ

չանցուցին պապերու լուծին տակը նուաճ-
ուելու ։ Պատմութիւնը յայտնի մեր բաժը
կը բացատրէ ։

Այո՛, դժուար ժամանակներ, դժբաղդ-
պարագաներ, անհաւատից լուծը՝ որոյ տակ
կը հեծէր Հայաստան, Սիսն ու Աղթամար
բաժնեցին Լուսաւորչի օրհնաւոր Յաջորդին
աթոռէն, և յաջողեցուցին զատ զատ ա-
թոռներ ձեւացընել ։ Բայց այս բաժանում-
ները՝ որչափ և ցաւալի էին և են, սակայն
ամենեւին կրօնական հերձուած մը չար-
տադրեցին ։ Թէ՛ Սիս և թէ՛ Աղթամար Հա-
յաստանեայց Ս. եկեղեցւոյ վարդապետու-
թիւնը պահեցին անաղարտելի, ո՛չ մէկ պա-
պական ծէս կամ նորութիւն ընդունեցան
երբէք ։ Ուստի և չգիտեմք թէ ի՞նչու այս-
չափ կուրախանան անդրմայրենականք ։

Ո՞չ ապաքէն բոլոր Հայ ազգը ճանչեց
միշտ Ս. Էջմիածնայ աթոռոյն գերագա-
հութիւնը, և համարեցաւ զայն միշտ Մայր
Աթոռ ։ Իսկ միւս Աթոռները թէ և պիտա-
կաւոր կաթողիկոսական անունը կը կրեն,
բայց մէյմէկ պատրիարքութիւններ են ․ Եւ
իշխանութիւննին այնչափ կոպարաւորեալ
է՝ որ գրեթէ Կ. Պօլսոյ Հայոց Պատրիար-
քարանին ազդեցութեան տակն են ։ Եւ
որովհետեւ սա ալ Ս. Էջմիածնայ Աթոռոյն
իրաւապետութեան ներքեւ է, ապա ուրեմն բո-

լոր Հայաստանեայց Եկեղեցին մի և նոյն օրինաւոր Առաքելական Յաջորդի մը հովուական ցուպին ներքեւ կառավարուած է և կը կառավարուի միշտ և հանապազ։ Ամենայն կրօնական խնդիր միշտ անոր գերագոյն ատեանը ներկայացան և կը ներկայանան միշտ։ Ամէն Հայու սիրտ այն Աթոռոյն վրայ դըրած է իւր բոլոր յոյսերը, և ամենայն ուղղափառ Հայ՝ խորին ակնածութեամբ կը խոնարհի այն Սուրբ Աթոռոյն առջեւ՝ յորոյ վերայ կը հովանանան Բարթողիմէոս և Թադէոս առաքելոց օրհնութիւնները, և մեծի Լուսաւորչին անյաղթելի Աջը։

Ուստի և ի՞նչ զարմանք որ այս գերագոյն Աթոռոյն հետ միշտ կը պատերազմին անդրալեռնականք։ Վասն զի իրենք ալ շատ լաւ կզգան թէ հո՛ն է Հայաստանեայց եկեղեցւոյ Առաքելական իշխանութեան բովանդակ լրումը։

Ապաքէն տեսանք որ Երկու Եպիսկոպոս միայն ինքնագլուխ ըլլալու թեկնածին, և ոչ եթէ “ շատ մը Եպիսկոպոսներ ”, ինչպէս Չէմըճէկեան բարդելով։ Եւ եթէ Հայոց եկեղեցւոյն վրայ Աստուծոյ բարկութեան նշան կը համարի երկու եպիսկոպոսաց գահասիրական հերձուածը, արդեօք յիրաւի համոզմամբ զայս կըսէ, թէ դարձեալ կը յանդգնի աղէտները պատրելու այդ Գաւառին.... ի՞նչ-

պէս կը մոռնայ բո՛ւն իւր եկեղեցւոյն պատ-
մութիւնը . . . կամ թէ կը համարի՞ թէ մեք
Հռոմայ եկեղեցւոյն պատմութիւնը չը գի-
տե՞նք ։

Այդ իմաստուն պատմագէտն ի՞նչպէս
կը մոռնայ Ավինեօնի անմոռանալի հերձ-
ուածը՝ որ 1306 ին սկսաւ , և հարիւր տա-
րիի մօտ տեւեց ։ Եւ այսչափ միջոցի մէջ
ո՞չ ապաքէն երկու և մինչեւ երեք պապ մի և
նոյն ժամանակ ինքզինքնին Հռովմէական ե-
կեղեցւոյ՝ մանաւանդ թէ ընդհանրական
եկեղեցւոյ գլուխ կանուանէին , և կը պա-
հանջէին որ ամեն քրիստոնեայ զիրենք Քը-
րիստոսի փոխանորդ կոչէ ։ Ո՛հ , ի՛նչ անիմանա-
լի ամբարտաւանութիւն և անտեղութիւն ։

Ո՞չ ապաքէն Աստուծոյ բարկութիւնը
Հռոմայ աթոռոյն վրայ առաւել ծանրա-
ցած կը տեսնուի , որովհետեւ թողուց զայն
որ խաղալիք ըլլայ փառամոլ և անօրէն ե-
կեղեցականաց ձեռքը ։

Ո՞չ ապաքէն Աստուծոյ բարկութիւնը
անհաւնո՛ր կերպով կիջնայ Հռոմայ եկեղե-
ցւոյն վրայ , մերթ Լութեր մը և մերթ Կալ-
վին մը յարուցանելով , որ պապականու-
թիւնը վեր 'ի վայր կը դղրդեն , մերկացու-
ցանելով նորա բոլոր քօղարկկեալ մնացած
ապականութիւնները , անկանոնութիւնները
ու գայթակղալից գործերը , որով և Արեւ-

մըտեան եկեղեցւոյ ամենէն աւելի պարծանք եղող ազգերը՝ կը բաժնեն կաղառեն հռոմէական բռնակալ պետութենէն։

Թո՛ղ ըսեն մեզ․ ե՞րբ Հայաստանեայց եկեղեցին այսպիսի սարսափելի ներքին երկպառակութիւններ ունեցած է, Թո՛ղ ցըցընեն ե՞րբ այսքան ահաւոր կորուստներ ըրած է։

Ահա պապական Փրօփականտայն․ հինգհարիւր տարիէ ի վեր թափած բոլոր ջանքին ու աշխատութեամբը եւ վատնած այնչափ միլիոններովը ուրիշ բան չկրցաւ ընել՝ բայց եթէ յիսուն հազարի չափ հոգի որսալ իրենց մայրենի եկեղեցւոյ ծոցէն։ Ասո՛ր վըրայ կը պարծին անդրալեռնականք։ Բայց միթէ այս յիսուն հազար օտարացեալ Հայերուն խմբը կըլլայ այն ՀԻՆԳ ՄԻԼԻՈՆ Հայոց քով, որ հաւատարիմ իրենց մայրենի եկեղեցւոյն, նորա սրբազան հօվանեացը ներքեւ կմակաղին «՚ի վայրի դալարւոջ և ՚ի ջուրս հանգստեան» սնանելով։

Բայց Հռոմ եթէ աւելին կուզէ՝ թո՛ղ համեմատէ այս ըրած հինգ հարիւր տարուան շահը՝ այսինքն 50 հազար լատինահայը այն հարիւր միլիոն բողոքականներուն հետ զոր Եւրոպիոյ մէջ կորսնցուց, թո՛ղ պարծի ուրախութեամբ որ բողոքականութեան հարուածով ըրած ՓՈՔՐԻԿ կորուստին

տեղ ․ մեծ և խիստ մեծ շահ մը ըրաւ՝ քա-
նի մը հազար Հայ իրենց մօրը գրկէն կոր-
զելով անիրաւութեամբ ։

Այո՛, Քրիստոսի Տեառն մերոյ խօսքը
պէտք է որ կատարուի . «Որով չափով չա-
փէք՝ չափեսցի ձեզ» ։ Հաւամ որ իր արբան-
եակներուն թափած ճգամբքն ու քրտամբք
վաստկած բազմագումար արծաթովը , և 'ի
գործ գրած բազմահնար խորամանկու-
թեամբն ու ոսկեզօծած ստապատիր քա-
ղաքական յոյսերովը՝ ամէն տարի Արեւել-
եան եկեղեցւոյ մէջ երկպառակութեան ս-
րոմներ կը ցանէ , անդին՝ Ամերիկայի մէջ նոյն
Հռոմը բողոքականութեան ձեռքով այն-
պիսի տարափելի կտորած մը կընդունի որ
անհաւատալի փութեօք կերթեւէր եթէ նոյն
իսկ Հռովմէականք չըլլային այս տարտասուե-
լի խոստովանութիւնն ընողները ։

The Universe ( Տիեզերք ) անունով անդ-
րալեռնական լրագիրը՝ որ Նիւ Եօրք կը-
տպուի , դեռ այս օրերս հետեւեալ տխրա-
լից տողերը կգրէր . «Հռոմէական եկեղե-
ցին՝ Ամերիկայի մէջ խիստ ցաւալի եկեղե-
ցի մըն է , որ կարողութիւն չունի իւր որ-
դիքը գրկացը մէջ հաստատուն պահելու ։
«Ահա միայն փոքր քաղքի մը մէջ՝ մէկ ամ-
սուամով երկու հազար հոգի կորանցուց որ
դարձան ի բողոքականութիւն . . . ասկէց

«Հասկըցէ՛ք թէ Հռոմէականութիւնը ի՛նչ
» աւելի մեծ կորուստներ կրնէ ամեն օր
« մեծագոյն քաղաքաց մէջ, ինչպէս են
« Նիւ-Եօրք, Ֆիլատելֆի, Պօսթն, Պոլթի-
« մօր, Նոր-Օրլէան, Չինչիննաթի, և այլն.
« Ասիկա ճշմարտութիւն մըն է որ ամեն
« տարի Երկու հարիւր հազար հոգի՝ որ Հռոմէ-
« ական ծնած էին ու կնքուած, կթողուն
« իրենց մայրենի կրօնը, ու կմտնին ու
« կդաստիարակուին բողոքական կրօնի մէջ.
« Մենք երկու հարիւր հազար ըսինք, բայց
« դեռ այս թիւն ալ քիչ է, իրօք առկէց
« աւելին է. Ո՞վ կրնայ ուրանալ»։

Երկու հարիւր հազա՜ր... ամեն տա-
րի՜.... Ի՜նչ արդարադատ դատաստան
Աստուածային. Եւ պապականք տակաւին
կը համարձակին պարծիլ իրենց ըրած ան-
նըշան ու սինլքոր որսերովը 'ի Հայաստան-
եայց եկեղեցւոյ.

Գ.

Հռովմէականք՝ այն ամեն ազգերու որ
եկեղեցւոյ վրայ Պապական միապետու-
թիւնը մերժած են միշտ և կը մերժեն՝
Հերձուածող անունը կ'ընծայեն պատուատի-
բաբար. Ուստի և նոյն անիրաւ և պժգալի
անունով կը դատապարտեն անխղճաբար

զեկեղեցին Հայաստանեայց, որովհետեւ յանուն բանին Աստուծոյ և Նուիրական աւանդութեանց կաթողիկէ եկեղեցւոյ կըբողոքէ նա ընդդէմ բռնաբարութեանց և այն նորամուտ յաւելուածոց զորս Հռոմայ Պապերը իրենց կոնդակներովը ներմուծանել յանդգնեցան 'ի Հանգանակն հաւատոյ Առաքելական սուրբ Եկեղեցւոյ ։

Առաքեալը կը պատուիրէր որ «Եթէ ես երկնից հրեշտակ մը մեր սովրեցուցածէն աւելի բան մը ձեզի սովրեցընէ՝ նզովեալ եղիցի» ։ Ապա ուրեմն պապականութիւնը՝ որ Առաքելոյն սովրեցուցածէն շատ աւելի նոր բաներ կը սովրեցընէ, ո՞չ ապաքէն այն ահաւոր նզովքին արժանացած է ։

Արդ որ ինքն ընդ Առաքելական նզովիւք դատապարտուած է՝ ի՞նչպէս զմեզ հերձուածող կը յանդգնի անուանել ։

Եւ ի՞նչպէս կը համարձակին պահանջել որ Հայաստանեայց սուրբ Եկեղեցին միանայ այն եկեղեցւոյն հետ՝ որոյ գլուխը ինքզինք աստուածական պատուով մեծացնելով անսխալական կը դաւանի, մինչդեռ ոչ միայն մարդկային ամեն սխալանաց ենթարկեալ է, այլ և տեսակ տեսակ մոլորութեանց մէջ ալ նշանաւոր հանդիսացած է ։

Կուզէ՞ք մեր խօսքը քանի մը պատմական ստոյգ օրինակներով ալ հաստատեմք, Պա-

պերուն պատմութենէն ծաղկաքաղ ընելով ։

Ահա Մարկելլինոս Պապը, 296ին, ուրացաւ զՔրիստոս, և զոհեց դիւաց՝ իբրեւ աստուածոց ։ Այս է անսխալութիւնը. բամբէ....

Զոզիմոս Պապ, 417ին, Պեղագեանց մոլորութիւնն ընդունեցաւ, և թէպէտ յետոյ զղջացաւ, բայց ժամանակ մը հերետիկոս մնաց ։

Վիգիլիոս 537ին, երկու անուանարկ կանանց ձեռքէն ընդունեցաւ պապական խոյրը, նոցա սիրոյն համար դատապարտեց Քաղկեդոնի ժողովքը ։ Բայց ինքը միաբընակաց մոլորութիւնը կը դաւանէր ։

Վոնիփակիոս Գ. 607ին աթոռ նստաւ, և իւր նախորդին համար (որ էր Գրիգոր Ա.) կըսէր թէ Նեռի՛ն կարապետն էր ։

Ոնորիոս Ա. 635ին, որոյ հերետիկոսութիւնը այնչափ մեծ դայթակղութիւն տըւաւ՝ մինչեւ Կոստանդնուպոլսոյ Գ. ժողովը դատապարտեց զինքը և նզովեց ։ Ո՛վ անսխալութիւն....

Ստեփաննոս Է. որ 896ին, իւր անհաշտ թշնամի Ֆորմօզուս պապին յաջորդելով, ոխը նորա դիակին վրայ թափեց, գերեզմանէն դուրս հանել տալով և կտրելով այն ձեռքը որով կը պատարագէր եւ օրհնութիւն կուտար, և դիակը Տիբերիս գետը

նետել տուաւ ։ — Ա՞յս են հեզ և խոնարհ սրտի Յիսուսին փոխանո՛րդն եմք դաւանողները ։ Ի՞նչ հայհոյութիւն ....

Եւ եթէ Պապերուն պատմութիւնը տակաւին շարունակենք՝ ինչե՜ր չենք գտներ. այն պատմութեան մէջ զոր դուք գոռոզութեամբ մը կանուանէք ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ, և յորում 'ի հանդէս կուգան այնպիսի պապեր, որոց անուանքն անգամ նախատինք են Եկեղեցւոյն Քրիստոսի ։

Ո՞չ ապաքէն հոն է որ կը տեսնեմք Սարգիս Գ. մը 903ին որ թէև ինքզինք յաջորդ կանուանէ Պետրոսի, այլ իրօք մծղնեայ Արամազդին աթոռակալ Թէոդորաներու և Մարուզիաներու ձեռքը խաղալիք կը թողու պապական լոյրը՝ երեսուն տարի, և վերջապէս Մարուզիայէն ունեցած պոռնկորդին ձեռամբ կը թողու հայրապետական աթոռոյն Յովհաննէս ԺԱ. անունով (931ին)։ Սոսկալի՜ պատմութիւն ....

Այս պղծութեանց մէջ կուգայ Յովհաննէս ԺԲ. պապը (956ին) ու առաքելական պալատը կատարեալ հանդիսարան կը դառնայ ամենայն պղծագործութեանց և անանուն պղծութեանց ։ Այս այն Քրիստոսի փոխանորդը կոչուածն է, որ ախոռի մը մէջ եպիսկոպոս կը ձեռնադրէ իր մէկ սիրականը ....

կերդնու յանուն Տեծին Դիւոփ, և գինին կը խմէ վրան կենաց սատանայի ....

Այս է այն սուրբ եկեղեցին, և այս են իրեն անսխալ պապերը ....

Այն աթոռոյն վրան բազմելու համար է որ Վոնիփակիոս Է. (974ին) սարսափելի չարչարանօք կը մեռցընէ զԲենեդիկտոս Զ. ։

Այն աթոռոյն վրայ է որ Բենեդիկտոս Թ. կը բարձրանայ (1033ին) տասը տարուան տղայ մը.. խառն անկողնոց ծնունդ....

Բայց ի՞նչ աւելորդ տեղ այս անլուր ոճրագործութեանց դժխեմ յիշատակներովը ընթերցողները տաղտկացընեմք ։ Թողումք ուրիշ այսպիսի գայթակղալից պապերուն նզովելի գործերն ու անունները, զոր պատմութիւնն արձանագրած է իւր անողոքելի դատակնքովը ։

Բաւական ըլլայ միայն յիշել այն պապը որ մարդկութեան համօրէն ամօթն եղաւ և իւր դարուն սարսափը, և զոր ժամանակակիցք անուանեցին մարդացեալ դեւն ....

Այս է Աղեքսանդր Զ. ԲՈՐՃԻԱ ։

Մեր գրիչը հոս կանգ կառնու, չը կըրնալով սարսափէն այսպիսի պղծալից պատմութեանց արձանագրութիւնն ընել... ։

Ո՞վ չգիտեր որ այդ անսխալ պապերուն մէջէն երեսուն և մէկը հերետիկոս էին և յափշտակիչ. քսան և ութը բռնաւոր, տասն

և ուխտը թունով ապականուած, չորսը խեղդամահ կորուսած, քառասունուերկուքը չարչարանօք ըլկուած, ու Ավինեոնի հերձուածող հակառակաթոռ պապերէն զատ՝ քանն և վեցն ալ իրենց աթոռէն վար առնուած են և մերժուած, իրենց անարժանութեանցն համար.

Մէկ հարցմունք մը միայն ընեմք Անդրալեռնականներուն. Դո՛ւք որ Աստուծոյ բարկութիւնն ու վրէժխնդիր ձեռքը Հայոց Եկեղեցւոյն վրայ կ՚երազէք տեսնել, միթէ Աստուծոյ Օրհնութիւնն ու քաղցր ժպիտը կը համարի՞ք իջած ձեր այն եկեղեցւոյն վրայ որոյ պատմութիւնը հիւսուածք մըն է գարշութեանց և ոճրագործութեանց...,

Դ.

Անդրալեռնական պատմիչք այնպէս իմն կը ձեւացընեն, իբր թէ Հայաստանեայց եկեղեցին Փլորենտիոյ ժողովոյն ժամանակ (1439) ընդունած ըլլայ պապին գեր՚իշխանութիւնը, և Հռոմայ հետ միացած, ինչպէս որ Յունաց կայսրն և Կոստանդնուպօլսոյ Յովսէփ Պատրիարքն ըրին նոյն ժամանակ, քաղաքական անատի յոյսերուն զոհելով իրենց ազգային եկեղեցւոյ իրաւունքները, և որոյ համար մերժուեցան Յունական ե-

կեղեցւոյ Հաւատարիմ մնացած ժողովուրդէն, երբ դարձան ի Կոստանդնուպոլիս, Եփեսոսի Մարկոս եպիսկոպոսին քաջութեամբը։

Մեք Յունական խնդիրն՝ իրենց աստուածաբաններուն թողլով, մեր մասին սա կըսեմք ամենայն համարձակութեամբ, որ Հայաստանեայց եկեղեցին Փլորենտիոյ ժողովոյն մէջ գտնուած չէ, ուստի և չէ ընդունած և չընդունիր եւս զայն 'ի թիւս տիեզերական ժողովոց, և ոչ իսկ անոր վարդապետութեանն հետեւած է և կամ անոր պահանջմունքները գործադրած է բնաւ։

Յիրաւի Եւգինէոս Դ. պապը, որ այն ժողովը գումարեց, Կ. Պոլսոյ ձեռնտուութեամբը, Արեւելեան եկեղեցին Արեւմտականին հնազանդեցնելու նպատակաւ (և որոյ յաջողութեան իբրեւ վարձք՝ խոստացած էր կայսեր Արեւմտեան Թագաւորաց օգնութիւն ընդդէմ Տաճկաց. որ Կ. Պոլսոյ ափունքն հասած էին), մասնաւոր հրաւիրագրաւ Փլորենտիա հրաւիրեց նաեւ զԿոստանդին Ե. կաթողիկոս, բայց նա առաւել խոհեմ քան զՊատրիարքն Յունաց՝ չհաճեցաւ մինչեւ Իտալիա պապին ոտքն երթալ, այլ քանի մը վարդապետ յղեց, որոց գլուխն էր Սարգիս վարդապետ Կաֆացի։ Ասոնք բարեբաղդութեամբ ճամբան ուշանա֊

լով այն ժամանակն հասան 'ի Փլորենտիա երբ արդէն ժողովն իր վաթորերկայորդ նիստերը գոցած էր , և Յոյնք ետ դարձած էին բողոքելու անոր դէմ զոր ընդունած էին բըռնութեամբ , պապական երկրին մէջ ։

Կաթողիկոսական նուիրակներն հասկըցան թէ ինչ հիւրադաւ ափունքներ էին ընկած , ուստի և զգուշութեամբ փարուեցան այն պապին հետ որ այնքան ներդութեամբ ընկճած էր Յունաց անընկճելի կարծեցեալ ոգին ։ Եւգինէոս Դ. փութացաւ կոնդակ մը գրեց « Հրաճանք վասն Հայոց » մակագրով , և ընծաներով վերադարձոյց նուիրակները առ կաթողիկոսն ։ Կարծեց Եւգինէոս թէ յաղթանակեց , Հայոց եկեղեցին նուաճեց , ուստի և այն աստիճան ուրախութիւն զգաց որ Հռոմայ Ս. Պետրոսի եկեղեցւոյն դրանը վրայ փորել տուաւ այն երկտող լատին յիշատակարանը , զոր մէջ կը բերեն Լը Մօ և Ձէնէլըն համաձայնաբար ցնծութեամբ , իբրեւ թէ յիշատակարան մը ըլլար այն Հայոց միութեանն ընդ եկեղեցւոյն Հռոմայ ։

Սակայն ընդունայն ուրախութիւն , վասըն զի ենթադրեմք եւս որ Սարգիս վարդապետ և իր ընկերներն ընդունեցան պապական հաւատքը , (ըստ ասոնց լատին պատմագրաց) , բայց ով անոնց ձեռքը տուած

էր այնպիսի արտօնագիր մը որով իրենք Հայոց եկեղեցւոյն լիազօր իշխաններն համարուէին, ուղածնին փոխելու և ուղածնին աւելցրնելու։ Իրենք՝ միայն պիտի ներկայացընէին հոն Հայոց եկեղեցւոյ հաւատքը. ուստի և իրենց հաւատափոխութիւնը ոչ ինչ ազդեցութիւն մը չէր կրնար ունենալ զիրենք յուղարկող եկեղեցւոյն վրայ։ Այդպիսի լիազօր արտօնագիր մը ոչ թէ միայն չունէին, այլ և ոչ իսկ կաթողիկոսն ինքն ունէր որ կարող ըլլար շնորհել. վասն զի եթէ կաթողիկոսն ևս հաւատադրուժ ըլլայ, Հայոց եկեղեցին կմնայ տակաւին անփոփոխելի, որովհետև ոչ ուրուք քմացը և կամացը գերի չէ մեր Ս. եկեղեցին, ուստի և ոչ ոք 'ի մարդկանէ կարող է փոխել կամ խախտել զայն որ «'ի վերայ վիմին Քրիստոսի հաստատեալ է»։

Դարձաւ Սարգիս վարդապետ իւր ընկերներովը, բայց արդէն Կոստանդին Ե. վախճանած էր, և սուրբ Աթոռը փոխադրուած 'ի Մայրավանս Ս. Էջմիածնայ. ուստի և չգիտեմք թէ ի՞նչ եղաւ պապական կոնդակն որ իրեն յանձնուած էր։ Վասնորոյ և կարելի չէ իմանալ թէ ճի՞շդ է արդեօք և հարազա՞տ այն լատին օրինակն որ այժմ յանուն Եւգինէոսի Դ. կը յածի։ Բայց ինչ ալ ըլլայ, այս յայտնի է որ այդպիսի

կոնդակ մը Հայոց սուրբ Աթոռը հասած չէ, վասն զի ոչ ոք 'ի Հայ աստուածաբանից և կամ 'ի ժամանակակից պատմագրաց չը յիշատակեր զայն: Մեք յատուկ հետազօտութիւն ըրինք այս մասին սուրբ Էջմիածնի կաթողիկոսական մատենադարանին մէջ, (1867) բայց հետքն անգամ չգտանք:

Սակայն եթէ այդ կոնդակն հասած եւս համարուէր 'ի սուրբ Աթոռն, միթէ բաւակա՞ն էր հաւատացնելու թէ Հայք Հռոմայ հետ միացեր են այն կոնդակին զօրութեամբ: Ո՛չ ապաքէն անոր պահանջածներէն և ոչ մէկը գործադրուած է երբէք յեկեղեցւոյն Հայաստանեայց, ինչպէս վերը կրկնեցինք:

Եթէ Հայք ընդունած ըլլային Փլորենտիոյ ժողովքը, ո՞չ ապաքէն նախ և առաջ պէտք էին հաւատոյ հանգանակին մէջ Հոգւոյն Սրբոյ համար յաւելցնել «ԵՒ ՅՈՐԴՒՈՅ ԲՂԽԻ» խօսքերը, որ Փլորենտեան ժողովոյն գլխաւոր նորաձոյծ վարդապետութիւնն է: Ո՞ւր Հայաստանեայց Եկեղեցւոյն մէջ այդ խօսքերն ընդունուած են: Ո՞ւր Քաւարանի վարդապետութիւնը: Ո՞ւր պապին Քրիստոսի փոխանորդ և Եկեղեցւոյ գլուխ ըլլալը ազգովին ընդունուած է: Ո՞ւր Քրիստոսի ծընընդեան, Թլփատութեան, Տեառնընդառաջի և Աւետման տօները՝ Լատինացւոց

հետ տօնած է, ըստ հրամանի Փլորենտեան ժողովոյն ։ - Եւ ոչ բնաւ երբէք ։ Ապա ուրեմն Լը Մօն և Զէվէմն բոլորովին կը ստաբանեն ։

Եւ կը զարմանամք որ ի՞նչպէս անդրալեռնականք կարեւորութիւն կընծայեն Եւգինէոս Դ. ի պէս պապի մը, զոր իւր հօգեւոր հայրը՝ Սուրբն Պեռնարդոս այնպէս խստիւ կը յանդիմանէր, և զոր Պազիլէայի ժողովը դատապարտեց յետոյ և անաթեմաներով նզովեց ։

Եւ ահա այն դատապարտեալ և նզովեալ պապն է որ լատինական եկեղեցւոյն մէջ մտուցած է Հոգւոյն Սրբոյ բխղման « և յՈրդւոյ » վարդապետութիւնը. վարդապետութիւն՝ հակառակ բոլորովին բուն իսկ Որդւոյն Աստուծոյ յայտնապէս աւանդածին 'ի սուրբ Աւետարանի ։ (Յովհ. ԺԵ. 26) վարդապետութիւն՝ զոր ոչ միայն Արեւելեան եկեղեցին երբէք ընդունած չէ՛, այլ և նոյն իսկ Արեւմտեան եկեղեցին մերժած էր շատ ժամանակ, ընդդէմ Սպանիացւոց որ սկսած էին վերոյիշեալ Թիւր յաւելուածն ընել Հաւատամքի մէջ ։ վարդապետութիւն՝ որոյ դէմ պատերազմած էին նախնի պապեր, և Լէոն Գ. այն աստիճան ընդդիմացած էր այդմ, որ որպէս զի մի՛ գուցէ օր մը այդ ստրուսումն յաւելուածը մուտ

դտնայ , Հաւատոյ հանգանակը փորագրել տուաւ արծաթեայ տախտակներու վրայ , և Հռոմայ Մայր եկեղեցւոյն մէջ կանգնել հրամայեց , որպէս զի այլափոխել չկարենան զայն ։

Սակայն այս ամենայն զգուշութիւն աւելորդ եղաւ ։ վասն զի քանի որ եկեղեցի մը՝ պապին , որ է ըսել մարդու մը անսըխալականութիւնը կընդունի իբրեւ հիմ, հիմ մը կընդունի որ հաստատութիւն չունի , վասն զի «աւազի վրայ հաստատուած է» , ինչպէս Փրկիչը կըսէ ։ Ուստի այն եկեղեցին ի՞նչ զարմանք է որ հետզհետէ նոր նոր փոփոխութեանց ենթակայ ըլլայ ։

Կարծեմ թէ բաւական տեսնուեցաւ որ Փլորենտեան ժողովը բնաւ ազդեցութիւն մը ունեցած չէ Հայոց Եկեղեցւոյն վրայ ։

## Ե.

Լը Մօնտ և Ջէնէվա պարբերականաց խըմբագիրները՝ իբրեւ Եւրոպացիք՝ դուցէ շատ զարմանք չէ որ Հայոց պատմութիւնն և աստուածաբանութիւնը չգիտնան , բայց զարմանք է թէ ի՞նչպէս միամտաբար հաւատք կընծայեն իրենց Պոլսեցի լատինահայ թղթակցացը , և առանց կշռելու և քննելու՝ կընդունին և կը հրատարակեն ա-

նանց գրած ստութիւնները, և կը հետեւին անոնց թիւր և չահաւէր գատողութիւններուն ։

Այս թղթակիցները՝ դժբաղդաբար Հայ ծնած են, բայց Հռոմայ զինուորութեան մէջ մտած, ուխտ ըրած են արհամարհել ու զրպարտել իրենց ազգը, և բոլոր իրենց ջանքը այն է որ զՀայն և իրեն սուրբ Եկեղեցին անարգ և գատապարտելի ընծայեն Եւրոպացւոց աչքին ։ Կարդացէ՛ք այս լատինահայ բարբառներուն, այս ազգադաւ Ներսէս Պաղոնցի թուղթերուն թղթերը ու գրութիւնները, և կը տեսնէք թէ ի՞նչ ժանտութեամբ իրենց մայրենի եկեղեցւոյն դէմ կը մաքառին, ի՞նչ պժգալի քաջութեամբ իրենց հայրապետան ձեռքերուն մէջ կը շողացնեն միջնադարեան ժանգահար ու փտած զէնքերը ։ Տեսէք ի՞նչ վայրենի ուրախութեամբ կը փայլի աչուընին՝ երբ անբմբռնելի վատութեամբ մը կը համարձակին իրենց հայրերուն սրբութեն շնորհած Ս. Եկեղեցին՝ « ԱՄԵՆԱԳԻՑ ՄԵՀԵԱՆ » անուանել ։

Այո՛, այս սարսափելի հայհոյութիւնն ընողը՝ օտարազգի մը չէ՛, Եւրոպացի Ֆրանկ մը չէ՛, այլ օտարազգիէ՛ն ալ օտար մէկն է, Ֆրանկէ՛ն ալ հայատեաց ... այսինքն՝ ՀԱՅ ՔԱԴԵՐԱՆ ։

Հայ բաղդերային խանձարուրքը Հռոմի

է, սիրտը Հռոմ, աչքը Հռոմ. իւր բոլոր ակնկալութիւնը հոն է. ուստի և հոն կը ձկտին իւր ամեն խորհուրդն ու մտածութիւն։ Իրեն մեծ քաջութիւնը այն է որ իր ազգը Հռովմայ ոտքին տակ պատուանդան մը դնէ. ուստի և ամենայն ջանքը կընէ որ իր եկեղեցին նուաստացնէ, որպէս զի Հռոմ բարձրանայ։ Իւր փառքն է ոչ միայն Հայոց Ս. Եկեղեցին գրպարտել, այլ և իր կրօնակից կղերն, զանոնք որոց սիրտը Ազգի սէր կայ։ Զրպարտութիւն՝ իրեն սովորութիւնն է, և մատնութիւնը՝ իրեն հաւատարմութեան նկարագիրը . . . .

Ահա և անցեալ տարուան կաթողիկոսական նուիրակին գալուստ 'ի Կ. Պոլիս՝ առիթ կուտայ բաղէրաններուն ծրանալ, Համակրօն դեսպանատուններու դուները ափ առնուլ, արքանեակներ ցրուել վեր ու վար և ամեն տեղ այնպէս մը ցրցնել թէ, «Այս նուիրակին գալուստը Ռուսական քաղաքականութեան մը արդիւնքն է. վախճանը՝ Ռուսաց շահն է, և թէ՝ Հայ կաթողիկոսը ուրիշ բան չէ՛ բայց եթէ Ռուսաց կայսեր մէկ գործիքը»։

Այս ըսին, գրեցին ու տարածեցին, որպէս զի Հայոց ազգը կասկածելի ընծայեն յաչս բարեխնամ Տէրութեան. և սոյն աւետիքը առին անդրբալեռնական օրագրաց։

Լը Մօնտ և Զէվէլին այս գրպարտութեան մանաւանդ թէ մատնութեան արձագանգ եղան Եւրոպիոյ մէջ, Հայաստանեայց Եկեղեցւոյն վրայ հրաւիրելով Եւրոպական տէրութեանց կասկածները։

Բայց ինչու համար այսչափ չփոթեցան անդրալեռնականք Գեր. Ջալալեան սրբազանին գալստեանը վրայ. վասն զի տեսան որ Հայոց վեհ. կաթողիկոսը Հռոմայ Պապին հաւասարազօր իշխանութեամբ նուիրակ կը ղրկէ, և իր կոնդակները պատկառանօք կընդունուին մեծազօր Պետութենէն։ Ասիկա յայտնի պզտիկութիւն մըն էր Հռոմայ համար, ուստի և գրպարտել պէտք էր որ Հայոց կաթողիկոսը այն բարձրութեան մէջ չնկատուի։ Եւ գրպարտողն ալ պէտք էր Հայն ըլլար....

Ո՛չ. բնաւ քաղաքական վախճան մը չունէր և չէր կրնար ունենալ Հայոց կաթողիկոսին նուիրակը։ Անոր պաշտօնը ուրիշ բան չէր, բայց եթէ Հոգեւոր Տիրոջ կողմանէ իւր Առաքելական օրհնութիւնը և Շնորհաբաշխ սուրբ Մեռոնը բերել առհաւատացեալ որդիս Սրբոյ Հօրն Գրիգորի, նոցա հոգեւոր վիճակը քննել և կրօնական հանգամանացը վերահասու ըլլալ։ Ասիկա Հայոց Առաքելական Աթոռոյն անժխտելի իրաւունքն էր, զոր այսքան դարեր նուի-

բաղդործած էին, և զոր ամեն երկրի վեհապետք ճանչցած էին ու միշտ վերապատուած։

Հայոց 'Թագաւորութիւնը իյնալէն, ու Հայոց ազգութիւնը ի սփիւռս երկրի ցրուելէն ի վեր, Մայր Աթոռը չէր կարող ուրիշ կերպով հաւատացելոց հետ իւր առընչութիւնը պահպանել, և նոցա հոգեւոր պէտքերուն և հանգամանաց ծանօթանալ՝ բայց եթէ իւր նուիրակները ժամանակ ժամանակ անոնց մէջ առաքելով, և նոցա ձեռքով եկեղեցւոյն հոգեւոր պէտքերը լըցուցանելով։ Ասիկա անհրաժեշտ պէտք մըն էր, հետեւանք Հայոց քաղաքական վիճակին տխուր հանգամանացը։ Եւս առաւել այն ժամանակները՝ յորս այնքան դժուար էին կցորդութիւնք, տեղական հանգամանաց և ուրիշ շատ մը դժուարութեանց պատճառաւ։

Պատմութիւնը՝ մեր սոյն ըսածը լիուլի կը հաստատէ։ Կաթողիկոսական նուիրակներուն դիմաց՝ ո՛չ բնական և ո՛չ քաղաքական արգելք մը չկար երբէք։ Մէկ կողմէն Տաճկաստան, միւս կողմէն Հնդկաստան, Պարսկաստան, Լեհաստան, Իտալիա, Թաթարստան, Մոլտավիա, Վալաքիա, Ավստրիա, Հօլանտա, այն առաքելական հովիւներուն անխոնջ քայլերուն ասպարէզն

էին ։ Անոնց անդուլ քրտանց և վաստակոց արդիւնքն է որ կը վայելէ այսօր Հայաստանեայց սուրբ եկեղեցին ։

Հայաստանի անկախութիւնը վերնալէն ի վեր, Ս. Էջմիածին երբեմն ամիրաներու, երբեմն խաներու, երբեմն Օսմանեանց, շատ անգամ Պարսից իշխանութեան տակ ինկած էր հետզհետէ ։ Բայց և ոչ մէկ քաղաքական իշխանութիւն անոր հոգևոր անկախութեանը դպչելու բռնաբարութիւն մը մեքենայած չէր բնաւ ։ Սուրբ Աթոռը՝ ճիշտ նոյն իրաւունքները կը վայելէր ինչ որ Հայոց թագաւորաց ժամանակները ։

1827էն ի վեր է որ Ռուսաց գաւառ եղաւ Արարատ ։ Այս ինքնակալութիւնը ուրիշ բան չըրաւ բայց եթէ շարունակել իրմէ առաջ տիրողաց ընթացքը, այսինքն թողուլ զԷջմիածին իւր հոգևորապէս ունեցած ազատ դրքին մէջ ։ Ուստի և վեհ. կաթողիկոսին Տաճկաստան նուիրակ մը ղրկելը՝ Ռուսաց քաղաքականութեան արդիւնքն է կարծելը՝ ոմանց չարութեան և նախանձու թելադրութիւնն է, որպէս զի սուրբ Էջմիածնայ Աթոռը չզօրանայ, որ Հռոմայ հետ չբաղդատուի, և այլոց՝ Հայոց եկեղեցական Պատմութեան վրայ ունեցած տգիտութեան հետևանքը ։

Սուրբ Աթոռը նուիրակ կը ղրկէր ան-

յիշատակ ժամանակներէ ի վեր. Ո՜չ ալ Ռուսաց քաղաքականութեան թելադրութիւնն էր, քանի որ դեռ այդ Հիւսիսաբնակ տէրութիւնը իւր խանձարուրաց մէջն էր տակաւին. Այդ իւր իրաւունքը սուրբ Էջմիածին գործադրեց մինչեւ վերջին ժամանակներս. Յովհաննէս Կարբեցի կաթողիկոսը, որ վախճանեցաւ 1843ին, նուիրակ եկած էր ի Կ. Պօլիս. Եւ տակաւին շատեր կան մեր մէջ որ կը յիշեն Աստուածատուր Սրբազան նուիրակը.

Ահա ուրեմն մեր՝ վեհ. Հայրապետը զՍարգիս Սրբազան Արքեպիսկոպոսը իբր նուիրակ առաքելովը՝ ոչինչ բան չըրաւ բայց եթէ իւր երջանկայիշատակ նախորդաց օրինակին հետեւելով, առաքելական փոխանորդ մը ղրկել ի Տաճկաստան, որ իւր աչքով տեսնելով ներկայ եղելութիւնները, ըստ այնմ և տեղեկագիր մը տայ հաւատացելոց հոգեւոր հանգամանացն ու պէտոյիցը.

Եւ սակայն Տաճկաստանի համար միայն չէր. Արդէն նորին վեհափառութիւնը Հնդկաստան և Պարսկաստան ալ նմանօրինակ առաքելական պաշտօնեաներ առաքածէր. Բայց սակայն ոչ Պարսից Շահին և ոչ Անգղիոյ թագուհւոյն սիրտը վախ մը չծընաւ որ այդ խաղաղութեան պաշտօնեայ-

ներն եկած ըլլան Հիւսիւսային ինքնակալին գործակալներն ըլլալու, և դէմանարքիստական դաւերախռովութեան ։

Ո՛չ, Հայաստանեայց սուրբ եկեղեցին և իրեն պաշտօնեայք՝ դիւանագիտութեան ո՛չ գործիք են, և ո՛չ երբէք հետամուտ քաղաքագիտական աղդեցութեանց ։ Բայց չը՛կա՛յ և արտաքին աղդեցութիւն մը որ իրենց վրայ կարենայ զօրանալ, և զիրենք՝ իւր նպատակին կողմը շարժել յաջողի ։

Հայաստանեայց սուրբ եկեղեցին իւ հաւատացելոցը շահը՝ միայն հոգևւոր գիտէ ։ Ինքը կսովրեցնէ հնազանդ ըլլալ, օրինաւոր իշխանութեանց, վասն զի ամենն ալ «յԱստուծոյ կարգեալ» կը ճանչնայ, ըստ Առաքելոյն ։ Ինքը կը սովրեցնէ հաւատարիմ ըլլալ քաղաքական իշխանութեան, ո՛ւր և ի՛նչ հանգամանքի մէջ ալ գտնուին. և Երկնաւոր վարդապետին հետ կը պատուիրէ «Տուք զկայսերն կայսեր և զԱստուծոյն՝ Աստուծոյ» ։

Ա՛յս է, և ա՛յս պիտի ըլլա՛յ միշտ Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ օրէնքն ու քաղաքականութիւնը ։ Ով որ այլ ընդ այլոյ կարծիքներ կընէ՝ կը զրպարտէ միայն, բայց զինքն իւր անասերիւր ճանապարհէն շեղեցնել չէ՛ կարող ։

Ահա և բազմադարեան փորձը զոյն կը

հաւաստէ։ Հայ կղերը՝ որ Առաքելական Աթոռոյն ներշնչութեամբ կը գործէ, երբեք քաղաքական ազդեցութեանց խուզարկու եղած չէ։ Եւ մինչդեռ Իտալիա, Սպանիա, Լեհաստան, Մեքսիք և ուրիշ տեղեր Պապական կղերը Հռոմայ շահերուն ամէն բան զոհել կը սորվեցընէ ժողովրդեան, և եկեղեցւոյ ամպիոններուն վրայէն ապստամբութեան գրգռիչ յորդորակներ կորոտան, Հայոց հեզահամբոյր քահանայն ու վարդապետը, Տաճկաստան, Ռուսաստան, Պարսկաստան, Աւստրիա, Ռումանիա, Հնդկաստան և ընդ ամենայն ծագս երկրի, ուր բաղդը առաջնորդած է Հայկայ որդւոցը քայլերուն, Հայ եկեղեցականը կըսեմ՝ ուրիշ բան չունի բերնին մէջ՝ բայց եթէ «հնազանդութիւն օրինաց և հաւատարմութիւն իշխանութեան»։

Երբեք չէ տեսնուած որ Հայ եկեղեցականութիւնը քաղաքական գրգռութեանց համար ամբաստանուի։ Ոչ մէկ թագաւորութեան մէջ չէ եղած դահիճ մը որ Հայ եկեղեցականի մը հետ ծանօթութիւն ըրած ըլլայ կառափնարանին կամ կախաղանը։ Ի՞նչ զարմանք ուրեմն եթէ այսպիսի անբամբաս եկեղեցականաց ժողովուրդը՝ հլումիշտ և հաւատարիմ հպատակ ճանչցուած և վկայուած ըլլայ ամէն ժամանակ,

ներն եկած ըլլան Հիւսիւսային ինքնակալին գործակալներն ըլլալու, և դիւանագիտական դաւերխաղը։

Ո՛չ, Հայաստանեայց սուրբ եկեղեցին և իրեն պաշտօնեայք՝ դիւանագիտութեան ո՛չ գործիք են, և ո՛չ երբէք հետամուտ քաղաքագիտական ազդեցութեանց։ Բայց չը՛կա՛յ և արտաքին ազդեցութիւն մը որ ի՛րենց վրայ կարենայ զօրանալ, և զիրենք՝ իւր նպատակին կողմը շարժել յաջողի։

Հայաստանեայց սուրբ եկեղեցին իւ հաւատացելոցը շահը՝ միայն հոգեւոր գիտէ։ Ինքը կսովրեցնէ հնազանդ ըլլալ, օրինաւոր իշխանութեանց, վասն զի ամենն ալ «յԱստուծոյ կարգեալ» կը ճանչնայ, ըստ Առաքելոյն։ Ինքը կը սովրեցնէ հաւատարիմ ըլլալ քաղաքական իշխանութեան, ո՛ւր և ի՛նչ հանգամանքի մէջ ալ գտնուին. և Երկնաւոր վարդապետին հետ կը պատուիրէ «Տուք զկայսերն կայսեր և զԱստուծոյն՝ Աստուծոյ»։

Ա՛յս է, և ա՛յս պիտի ըլլայ միշտ Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ օրէնքն ու քաղաքականութիւնը։ Ով որ այլ ընդ այլոյ կարծիքներ կընէ՝ կը զրպարտէ միայն, բայց զինքն իւր անատերիւր ճանապարհէն շեղեցնել չէ՛ կարող։

Ահա և բազմադարեան փորձը զայն կը

հաւաստէ ։ Հայ կղերը՝ որ Առաքելական Աթոռոյն ներշնչումներովը կը գործէ , երբէք քաղաքական ազդեցութեանց խուզարկու եղած չէ ։ Եւ մինչդեռ Իտալիա , Սպանիա , Լեհաստան , Մեքսիք և ուրիշ տեղեր Պապական կղերը Հռոմայ շահերուն աւելի բան զոհել կը սովրեցնէ ժողովրդեան , և եկեղեցւոյ ամպիոններուն վրայէն ապստամբութեան գրգռիչ յորդորակներ կորոտան , Հայոց հեզահամբոյր քահանայն ու վարդապետը , Տաճկաստան , Ռուսաստան , Պարսկաստան , Աւստրիա , Ռումանիա , Հնդկաստան և ընդ ամենայն ծագս երկրի , ուր բաղդը առաջնորդած է Հայկայ որդւոցը քայլերուն , Հայ եկեղեցականը կըսեմ՝ ուրիշ բան չունի բերնին մէջ՝ բայց եթէ « հնազանդութիւն օրինաց և հաւատարմութիւն իշխանութեան » ։

Երբէք չէ տեսնուած որ Հայ եկեղեցականութիւնը քաղաքական գրգռութեանց համար ամբաստանուի ։ Ոչ մէկ թագաւորութեան մէջ չէ եղած դահիճ մը որ Հայ եկեղեցականի մը հետ ծանօթութիւն ըրած ըլլայ կառափնարանը կամ կախաղանը։ Ի՞նչ զարմանք ուրեմն եթէ այսպիսի անբամբաս եկեղեցականաց ժողովուրդը՝ հլումիշտ և հաւատարիմ հպատակ ճանչցուած և վկայուած ըլլայ ամէն ժամանակ ,

Ո՞չ ապաքէն դեռ մեր օրերը բարձրապատիւ Աալի փաշա, ժամանակիս ամէնէն մեծ քաղաքագէտներէն մէկը, առաջին Հայ երախտապարտացող վկայութիւն մը կուտար Հայոց ազգին հաւատարմութեանը վրայ։ Եւ իրմէն առաջացող չորս դարերու անդրդուելի հաւատարմութիւնը չէ՞, զոր երեք միլիոն Հայ ամէն պարագայից մէջ ցցուցած է առ Օսմանեան տէրութիւն։ Ցաւ դրացի հզօրակ ազգեր նոյն վկայութիւնը չէին կարող ընդունիլ ի բարձրապատիւ եպարքանէն։ Եւ պատճառը ո՞վ չգիտեր . . . ։

Այս ուրեմն մեծ անիրաւութեամբ կը գրպարտեն Լը Մօ․․․ և Զէ․․․, եւ իրենց լատինահայ թղթակիցները երբ զՍուրբ Էջմիածին կուզեն ցցունել իբրև գործի Ռուսական ազդեցութեան։ Ահա քառասուն տարի է որ Արարատայ վրայ թեւերը կը տարածէ Ռուսականն արծուի։ Թող ըսեն թէ այսչափ ժամանակի մէջ ի՞նչ քաղաքական ազդեցութիւն ներգործեց Հայոց ազգին վրայ։ Թող ցուցնեն բերդերու կամ բանտերու նսեմաստուեր խորերը եւ ապըստամբութեան յանցանօք Հայակրօն կալանաւոր մը թող գտնեն։ Չկայ, չկայ ընաւ և ոչ ուրեք։ Ի՞նչ աւելի մեծ ապացոյց թէ Հայաստանեայց Ս. Աթոռը ամէն տեղ հաւատարմութիւն կը քարոզէ իւր զաւակացը և ինչ

փրկարար է նորա հոգեւոր ազդեցութիւնը` ժողովրդեան հանդարտութեանն համար։

Մեր թշնամիք` ոչ եթէ չեն կրնար տեսնել զայս կամ ըմբռնել, այլ` այս բարուրանօք զմեզ կասկածելի կուզեն ընծայել յաչս այն տէրութեան որոյ բարեխնամ մարդասիրութիւնը` մեր քաղաքարեան հաւատարմութեան արդար փոխարէն մըն է։ կուզեն որ Հայոց Առաքելական Աթոռը զրկուի ի պաշտպանողական շնորհաց Օսմանեան պետութեան, որով և հետզհետէ նսեմանայ և իւր բարձր նշանակութիւնը կորսնցնէ կրօնական աշխարհի առջեւ։

Այս է մեր թշնամեաց խորագիտութիւնը, այս է կուսակցութեան մը մտածութիւնը։ Բայց այդ կուսակցութիւնը արժանի անգամ չէ որ Հայու անունով պատուի։ Պապամիտ արձագանքներ են, Հայ կրօնից դաւաճաններ....։ Անոնց վրայ Ս. Գրիգորի օրհնութիւնը պիտի չափուի....։

Ո՛չ ո՛չ. — Հայութեան վառարանը, Ս. Էջմիածին, մասնաւոր դրօշակի մը տակ երբէք չպիտի խոնարհի։ Քաղաքականութեան եւ դիւանագիտութեան յորձանազայր ալիքներն ու փոթորկայոյզ կոհակները` միշտ պիտի փշրին ու խորտակին Հայոց Առաքելական Աթոռոյն պատուանդանին ներքեւ։

Ո՞չ ապաքէն դեռ մօտ օրեր բարձրապատիւ Ալի փաշա, ժամանակիս ամենէն մեծ քաղաքագէտներէն մէկը, առաջի Հայ եպիսկոպոսաց վկայութիւն մը կուտար Հայոց ազգին հաւատարմութեանը վրայ։ Եւ ինչն արդարացոյց չորս դարերու անդրդուելի հաւատարմութիւնը չէ՞, զոր երեք միլիոն Հայ ամեն պարագայից մէջ ցցուցած է առ Օսմանեան տէրութիւն։ Շատ դրացի հպատակ ազգեր նոյն վկայութիւնը չէին կարող ընդունիլ ի բարձրապատիւ եպարքոսէն։ Եւ պատճառը ո՞վ չգիտեր....։

Այսօր ուրեմն մեծ անիրաւութեամբ կը գրպարտեն Լը Մօնդ եւ Զէնին..., եւ իրենց լատինահայ Թղթակիցները երբ զՍուրբ Էջմիածին կուզեն ցուցնել իբրև գործի Ռուսական ազդեցութեան։ Ահա քառասուն տարի է որ Արարատայ վրայ թեւերը կը տարածէ Ռուսականն արծուի։ Թող ըսեն թէ այսչափ ժամանակի մէջ ի՞նչ քաղաքական ազդեցութիւն ներգործեց Հայոց ազգին վրայ։ Թող ցուցնեն բերդերու կամ բանտերու նսեմաստուեր խորերը եւ այլատամբութեան յանցանօք Հայակրօն կալանաւոր մը թող ցուցնեն։ Չկա՛յ, չկա՛յ բնաւ եւ ոչ ուրեք։ Ի՞նչ աւելի մեծ ապացոյց թէ Հայաստանեայց Ս. Աթոռը ամեն տեղ հաւատարմութիւն կը քարոզէ իւր զաւակացը եւ ինչ

փրկարար է նորա հոգևոր ազդեցութիւնը՝ ժողովրդեան հանդարտութեանն համար։

Մեր թշնամիք՝ ոչ եթէ չեն կրնար տեսնել զայս կամ ըմբռնել, այլ՝ այս բարուրանօք զմեզ կասկածելի կուզեն ընծայել յաչս այն տէրութեան որոյ բարեխնամ մարդասիրութիւնը՝ մեր քաղաքական հաւատարմութեան արդար փոխարէն մըն է։ Կուզեն որ Հայոց Առաքելական Աթոռը զրկուի փ. պաշտպանողական շնորհաց Օսմանեան պետութեան, որով և հետզհետէ նուաստանայ և իւր բարձր նշանակութիւնը կորսնցնէ կրօնական աշխարհի առջեւ։

Այս է մեր թշնամեաց խորագիտութիւնը, այս է կուսակցութեան մը մտածութիւնը։ Բայց այդ կուսակցութիւնը արժանի անգամ չէ որ Հայու անունով պատուի։ Պապամիտ արձագանքներ են, Հայ կրօնից դաւաճաններ ....։ Անոնց վրայ Ս. Գրիգորի օրհնութիւնը պիտի չափուի ....։

Ո՛չ ո՛չ. — Հայութեան վառարանը, Ս. Էջմիածին, մասնաւոր դրօշակի մը տակ երբէք չպիտի խոնարհի։ Քաղաքականութեան եւ դիւանագիտութեան յորձանազայր ալիքներն ու փոթորկայոյզ կոհակները՝ միշտ պիտի փշրին ու խորտակին Հայոց Առաքելական Աթոռոյն պատուանդանին ներքեւ։

Այն Ս. Աթոռը՝ մնաց այսչափ դարուց եւ թշնամեաց յաղթական. Նա միշտ պիտի տեսնէ իւր ոտքին տակ իւր հակառակորդաց հետզհետէ ամօթահար պարտութիւնը։

Եւ այն երկնանման կաթուղիկէին վրայ ուր իջաւ Աստուծոյ Միածին Որդին, ուրիշ դրօշակ երբե՛ք պիտի չսաւառնի՝ բայց եթէ Մահու և Դժոխոց յաղթող Քրիստոսի ԽԱՉԸ, յաւիտենական կենաց փառաճաճանչ նշանը։

Այն է Հայոց յոյսը, և այն միակ ապաւէնը։

Անով յաղթեցին, անով պիտի յաղթե՛ն միշտ իրենց թշնամեացը։

ՎԵՐՋ

